# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## № 10 ● 1985

Լույս է տեսնում 1923 թվականից

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ
Վահան Տերյան . . . 1
ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
Ոսկե սայլակ,
Սրբազան հող . . . 4
ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ
Բնության դասերը . . . 5
ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
Զրույցներ հայ ժողովրդի
պատմությունից . . . 6
ՊԻՈՆԵՐ-ԴՊՐՈՑԱԿԱՆ
ԿՅԱՆՔ . . . . . 7
ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ
Հանդիպում,
Զարմանք . . . . 9
ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
Երկու խոսք Տերմինուս աստծու
և տերմինաբանության մասին 10
ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՁԻՐՔՈՎ
ՌԻ ՁԵՌՔՈՎ . . . 12
ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ
Խնձորենին. Ձին . . 14
ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ
Թե չգիտեք..., Ո՞վ է սխալ և
ինչու՞... . . 15
ԼԵՎՈՆ ՋԱՎԱԽՅԱՆ
Հայրենիք սավածը հողն է . 15
ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ
Տեղանունը հուշարձան է . 16
ԱԼԵՔՍԱՆԴՐ ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ
Թումազի կաղնին . 17
ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ
Առաջին երգերը գարնան
մասին . . . . 20
ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ
Ուսուցիչը . . . 22
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ
ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ . . 24
ԼԵՈՆԱՐԴՈ ԴԱ ՎԻՆՉԻ
Հեքիաթներ . . . 26
ԳԻՏԵ՞Ք, ՈՐ . . . . 30
ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Ծիածանի մասին . . . 30
ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ
Երկու անկուշտ բաժակ. . 31
ԺԱՄԱՆՑ . . . . . 32
ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ

# ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆ 100

(1885—1985)

## Արարատին

Երկնասլաց ու թեթև,
Նրբակապույտ ծածկած մեգ,
Դու, հրեշտակ լուսաթև,
Նյութեղեն չես դու երբեք:
Հայոց արնոտ աշխարհի
Հոգին ես դու անարատ,
Հուրը հար թող հրահրի
Սեգ ճակատիդ, Արարա՛տ:
Եվ ավերվող մեր սրտում
Եռա անմար ու առատ,
Դու, պահապան մշտարթուն,
Լուսակատար Արարատ...

Չեմ տեսել քեզ, բայց որպես
Անուշ ցնորք իմ հոգում
Պայծառ ես դու, հրակեզ,
Հրապսակ ու կանգուն—
Արդար դրոշ հայության,
Սիրո սեղան հրառատ,
Դու՛, իմ երկրի հարության
Անխաբ վկա, Արարա՛տ.
Որքան մնանք մենք ննջում,
Որքան խավարն իջնի խոր,
Տիրանավո՞ր մեր հոգուն
Դու՛, պահապա՛ն զորավոր...
Որպես երազ լուսեղեն
Ձյունապայծառ ու շողուն՝
Դու, անխորտակ ապավեն
Հրաճարակ մեր հոգուն.
Կանգնի՛ր, անկյալ ժողովուրդ,
Եվ հավատա՛, և տոկա՛.
Կա՛ քո վշտում վեհ խորհուրդ
Եվ խաչվածին մահ չկա.
Պարզվի՛ր պայծառ դեպի վեր,
Ցոլա՛ հրով անարատ,
Երկրիս մոխիր ու ավեր,
Դու՛, անմահ սիրտ, Արարատ...

(1915 թ.)



ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

## Աղբյուրը

Գանձայում մի աղբյուր կա:

Պատմում են, որ իր շրջագայությունների ժամանակ աշուղ Ջիվանին այս աղբյուրի մոտ տեսել է մի գեղեցիկ աղջկա ու հորինել է իր հանրահայտ «Պաղ աղբյուրի մոտ» երգը: Ասում են՝ փոքրիկ Վահանն էլ շատ է թափառել այդ աղբյուրի շրջակայքում: Ասում են՝ այդ աղբյուրը երգի շնորհ տալու զորություն ունի: Ամեն անգամ, երբ առիթ է լինում մտնել բանաստեղծի տուն-թանգարանն ու թանգարանի գավիթը, ես մտածում եմ, որ այնտեղ մի բան պակաս է՝ հանրահայտ այդ աղբյուրը... Ու ես մտովի տուն-թանգարանի ցանկապատերը լայնացնում եմ, նրա մեջ առնելով աղբյուրը:

Ես մտովի աղբյուրը ցանկապատի մեջ առնելուց հետո տուն-թանգարանի ցանկապատն էլի եմ լայնացնում ու հասցրնում Գանձան շրջապատող հորիզոնի շրջագծին ու այնտեղ ընկած ամեն ինչ՝ սար ու բլուր, մարգագետին ու առու, ամպ ու մշուշ, ծառ ու քար, և ամբողջ շրջակայքն առնում եմ տուն-թանգարանի ցանկապատի մեջ:

Ես գոց աչքերով նայում եմ ցանկապատ դարձած հորիզոնի գծին ու տես-

նում՝ շրջակայքում տխուր գույներ կան՝ այստեղից է տերյանական տխրությունը, շրջակայքում թախծոտ լույս կա՝ այստեղից է տերյանական լույսը... Ու հետո այդ շրջապատի մեջ տեսնում եմ իրեն՝ բանաստեղծին:

Ու մտածում եմ.

— Բանաստեղծն իր եզերքի ամեն ինչի մեջ կա, բանաստեղծը ձուլված է իր եզերքին:

## «Չեմ կարող ասել»

Պարապմունքը նվիրված էր Վահան Տերյանին:

— Մենք կկարդանք Տերյանի բանաստեղծություններից,— դիմում եմ դասարանին,— դուք ուշադիր կլսեք և կփորձեք կռահել, թե նրանցում ինչն է վերցված մեր եզերքից:

Կարդում ենք բանաստեղծությունները, աշակերտները գրառում են այն տողերը, որոնց մեջ նկատում են... ջավախքյան տարրեր:

Ընթերցանությունից հետո ես խոսքը տալիս եմ աշակերտներին, և նրանք կարդում են իրենց նշումները:

— **«Ես կանգնած եմ վայրի ժայռի կատարին»** տողի մեջ տեսնում եմ Աբշալա ջրամարգի կողքի սարն ու նրա ժայռերը: Վայրի ժայռը այդ ժայռն է,— ասում է տղաներից մեկը:

Մյուսն ընտրել է՝

**Կարծես ականջիս հնչում է բարակ**
**Զանգակը գյուղիս քարաշեն ժամից...**

— Այդ բանաստեղծության մեջ ես տեսնում եմ Գանձայի եկեղեցին: Իրենց գյուղն է հիշել ու գրել է այդ բանաստեղծությունը:

— Ես ընտրել եմ հետևյալ տողը,— կարդում է աշակերտուհին.

**Մեռնում է օրը, իջավ թափանցիկ**
**Մութի մանվածքը դաշտերի վրա...**

այս տողերի մեջ ես տեսնում եմ Գանձայի շրջակայքի դաշտերը, այնտեղի առուները ու արտերը...

Մեկ ուրիշն ընտրել է **«Հովիվները այնտեղ կրակ են արել»** տողն ու դրա մեջ տեսնում է մեր սարերում հովիվների վառած խարույկները:

Եվ այդպես՝ ամեն մեկը մի տողի, մի քառատողի մեջ վերագտնում է հայրենի եզերքի պատկերները:

Սևաչ տղան տագնապի մեջ է, հապաղում է.

— Դու ի՞նչ ես գրառել,— դիմում եմ նրան:

— Ես ոչ մի բան գրի չեմ առել... Եթե գրառելու լինեի՝ բոլորը պիտի գրառեի, որովհետև ընթերցված ամեն տողի մեջ տեսնում եմ մեր շրջապատը, մեր բնությունը, մարդկանց, էլի բաներ, թե ինչ, չեմ կարող որոշակի ասել...

— Գուցե ոգի՞ն,— տղային հասկանալով լրացնում եմ ես:

Նա նկատել էր ամենակարևորը:

## Տուն-թանգարանում

Ուսումնական տարվա վերջում դասարանը ցանկություն հայտնեց այցելել Վահան Տերյանի տուն-թանգարան:

Ու մենք գնացինք Գանձա:

Տուն-թանգարանում մեկ անգամ էլ վերամփոփեցինք այն, ինչ գիտեինք Տերյանի կյանքի ու ստեղծագործության վերաբերյալ:

Հավաքվել ենք եկեղեցու գավիթում կանգնած խաչքարի մոտ:

— Այն երկու շիրիմները բանաստեղծի պապինն ու տատինն են՝ Գրիգորին ու Նախշունինը, իսկ այս խաչքարի տակ թաղված է Տերյանի դուստրը՝ Նվարդը: Խաչքարը քանդակել է Արա Շիրազը՝ Հովհաննես Շիրազի ավագ որդին:

— Իսկ ինքը՝ Հովհաննես Շիրազը Գանձա եկե՞լ է,— հարցնում են երեխաները, ու ես հուզվում եմ.

— Հովհաննես Շիրազը շատ էր ուզում այցելել Ջավախք: Մի անգամ նա ասաց. «Դու կերթաս գյուղ, ես կգնամ իմ ծննդավայր Գյումրի քաղաքը, այնտեղից քեզ կհեռագրեմ, կգաս, իրար հետ կերթանք... Գամ, տեսնեմ այդ ի՞նչ բընքուշ եզերք է, որ ծնել է այդպիսի բընքուշ Տերյան»,— ասաց Հովհաննես Շիրազը:

Պայմանավորվածի պես ես գյուղում սպասում եմ Հովհաննես Շիրազի հեռագրին: Բայց... հեռագրի փոխարեն որոշ ուշացումով ստանում եմ բանաստեղծի նամակը.

«Սիրելի Վիկտոր Հովսեփյան՝
երիտասարդ պոետ

Խոստացել էի, որ իմ ձայնը քեզ կըհասցնեմ Գյումրիից... բայց այնտեղ հազիվ մի երեք օր մնացի, թեպետ շատ ու շատ կուզեի այնտեղ մնալ, չէ՞ որ այնտեղ՝ իմ ծննդավայրում, այնպես եմ, ինչպես մանկիկը մոր կրծքի վրա, կամ ինչպես ձուկը ծովում, բայց վռազ կանչվեցի ու ձ[illegible]որված ետ սրարշավեցի... գի-

տե՞ս, թե ինչու... չէ՞ որ Սիփանս էր ծընվելու... այնպես որ՝ ինձ կներես, ոչ միայն դու, այլև տեղիդ ազնիվ ու ազգասեր իմ հայ ժողովրդի այդ ոսկե պատառը...

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ

1969 թ., Երևան, օգոստոս»:

— Հովհաննես Շիրազը չի եկել այստեղ, բայց նրա որդու քանդակած խաչքարը միշտ մնալու է Վահան Տերյանի տուն-թանգարանի գավիթում,— ասում է աղջիկներից մեկը՝ թախծոտ ու խոնավ բառերով:

## Տերյանի անձի մասին

Իններորդ դասարանցի տղան խընդրում է, որ ես պատմեմ, թե ինչ հիշողություններ են թողել ժամանակակիցները Վահան Տերյանի մասին:

Լրացուցիչ ընթերցանության համար ես հանձնարարում եմ «Տերյանը ժամանակակիցների հուշերում» գիրքն ու, այնուամենայնիվ, հիշում եմ թիֆլիսաբնակ տարեց կնոջ՝ Հայաստան Համազասպի Հովսեփյանի հիշողությունը.

— 1917, թե 1918 թվականն էր. Վահանը իր եղբայրների հետ եկավ Ղուշչի, հորեղբորս տուն: Նուրբ ու կոկիկ հագնված, նիհար ու գունատ մի մարդ էր, շատ կամաց ու ցածրաձայն էր խոսում: Հյուրասիրության սեղանին ամեն մեկը մի բան էր պատմում, իսկ ինքը շարունակ լսում էր՝ մտքերի հետ ընկած: Հիշում եմ՝ իր Ներսես եղբոր արարքն էր գովում, որը առաջին համաշխարհային պատերազմի օրերին մի թուրք անտեր աղջկա տիրություն էր արել ու հասցրել հարազատներին: Երկրորդ անգամ,— վերհիշում է պատմողը,— Տերյանին տեսա Թիֆլիս տեղափոխված Եղիշե հորեղբորս տանը: Հիվանդ էր, առանձին սենյակ էին հատկացրել: Այս անգամ ավելի նիհար ու գունատ էր, ավելի դողդոջ ու ցածրախոս...

— Նուրբ ու քնքուշ, մեղմ ու ցածրախոս, մարմնով ու խառնվածքով էլ այնպես է եղել, ինչպես իր քնքշանուրբ տողերը,— եզրակացության են գալիս աշակերտները:

— Բանաստեղծությունը բանաստեղծի հոգու կենսագրությունն է,— ամփոփում եմ ես ու հարցով դառնում դասարանին.— բանաստեղծի հոգևոր խառնըվածքի ի՞նչ գիծ կարող ենք վերծանել այս փոքրիկ հիշողությունից:

— Վեհանձն մարդասիրությունը,— տեղից ձայնում է տղան ու շարունակում,— այդ տարիներին Տերյանը, անշուշտ, իր արդեն ավարտած «Երկիր Նաիրի» շարքի հետ է եղել, ու թեև հայրենի Ջավախքում թուրքերի գործած բարբարոսությունների թարմ տպավորությունների տակ էր, այդուհանդերձ, նրա մարդաշեր հոգին գովել է իր Ներսես եղբոր արարքը, որը թուրք անտեր աղջկան մարդասիրաբար տիրություն է արել ու հասցրել իր հարազատներին:

— Եվ իրոք, միայն մեծ ու լուսավոր հոգուց կարող էր ճառագել լուսաշատ «Երկիր Նաիրին».

**Մշուշի միջից,— տեսի՞լ դյութական,—**
**Բացվում է կրկին Նաիրին տրտում...**

## Տերյանի առիթով

Կրճնկոց գյուղ կա Կարնո գավառում:

Իմ ունեցած քարտեզների վրա առայժմ չեմ գտել այդ գյուղը և չգիտեմ նրա մոտավոր տեղը:

Ինձ թվում է՝ այդ գյուղը գտնվում է Ծիրանկաց ջրբաժան լեռնապարից արևմուտք, ու նրա աղբյուրները սնում են Եփրատը:

Իսկ Գանձայի ջրերը Քուռ գետի հետ խառնվում են Արաքսին:

Եփրատ և Արաքս... Հայոց ստնտու գետեր:

Եթե չլիներ 19-րդ դարի երկրորդ քառորդի սկզբի Կարնո հայության գաղթը, Տերյանի պապի հայրը կմնար Կրճնկոց գյուղում:

Կարապետ արքեպիսկոպոսը թուրքական ճիրաններից փրկած Կարնո հայությանը մոտ հարյուր վաթսուն տարի առաջ բերեց Արևելյան Հայաստան ու Ջավախք:

Բերեց, ու Արաքսը սնուցող աղբյուրները շատացան:

Բերեց, ու Եփրատը սնուցող աղբյուրները ցամաքեցին:

Տերյանի առիթով ես հաճախ Գանձայից հասնում եմ Կրճնկոց, Արաքսից՝ Եփրատ:

Տերյանի առիթով ես մտածում եմ Արաքսի գտածի ու Եփրատի կորցրածի վրա ու կկոցած աչքերով փորձում եմ տեսնել... դյութական տեսիլ Նաիրին տրտում: Եթե չլիներ Կարնո հայերի գաղթը, մի՞թե պիտի Վարուժանի ու Սիամանթոյի ճակատագիրը վիճակվեր նաև Վահան Տերյանին, որ դեռ չէր ավարտել «Երկիր Նաիրին»:

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

## Սրբազան հող

Լեռնային վարդ,
Խոնարհ ու հեզ,
Դու ինձ ժպտա,
Ես ժպտամ քեզ:

Մամռոտ քարափ
Արևակեզ,
Դու ինձ հույս տուր,
Ես հույս տամ քեզ:

Հող իմ դու սուրբ,
Ամենատես,
Դու ինձ լույս տուր,
Ես լույս տամ քեզ:

## Ոսկե սայլակ

Պատկերացրեք, ի՞նչ կլիներ,
Թե մեխն իր պայտը չունենար,
Թե այդ պայտն իր ձին չունենար,
Այդ ձին իր սայլը չունենար,
Չունենար սայլը սայլապան,
Սայլապանն էլ ինձ պես մի թոռ,
Որ ձեզ համար շաղը վրան
Խնձոր բերեր ոսկե սայլով:

Պապս ամբողջ կյանքում հովվություն արեց, ամբողջ կյանքը բնության մեջ ու բնության հետ անցկացրեց: Նա մեր հանդ ու դաշտի, մեր լեռների, մեր բնության մի մասնիկն էր՝ ինքն էլ բնության նման ներդաշնակ ու անխաբեղի: Եվ նրա դպրոցն ու համալսարանը բնությունն էր: Ամեն ինչ բնությունից էր սովորում, բնության օրինակներով բացատրում կյանքի երևույթները: Նայում էր լուսնյակին, աստղերին, հեռավոր, հազիվ նշմարելի ամպերի ծվեններին ու ճշգրտորեն գուշակում սպասվող եղանակը, անտառի գազանների վարքով գուշակում էր, թե ինչպիսին կլինի ձմեռը, ինչքան կուշանա գարունը: Մի խոսքով՝ բնությունը նրա համար բաց ու ընթեռնելի գիրք էր: Նա հաճախ էր մեզ հետ զրուցում բնության գաղտնիքների մասին, բացատրում, ցույց տալիս, աշխատում մեզ փոխանցել իր իմացածը:

Մի անգամ ճնճղուկը մեր տան պատի մեջ բույն էր դրել, ձագ հանել: Բույնը ցածր էր, մառանի դռան կողքին, որտեղ հաճախ էինք նստում երեկոները հանգստանալու: Եվ ահա խեղճ ճնճղուկի համար սկսվում էր իսկական տառապալից սպասումներով մի աշխատանք: Նա՝ մորեխը կտուցի մեջ ամուր պահած, հայացքը մեր հայացքներին, ժամերով թռչկոտում էր քարից քար, ճյուղից ճյուղ, անհանգիստ ծվծվում, մինչև հարմար պահ էր որսում և անմիջապես ներս ընկնում բույնը: Մի օր էլ այսպես նստած էինք, պապս երկար նայեց, բեղի տակ ժպտաց ու ասաց.

— Զարմանալի է բնությունը: Ինչպիսի՜ համբերություն է տվել այս փոքրիկ թռչունին: Երանի թե մարդիկ էլ այսպիսի համբերություն ունենային:

Ես այն ժամանակ փոքր էի: Հետո կյանքում շատ բաներ տեսա, բայց պապիս կարծես թե իմիջիայլոց ասված խոսքը չմոռացա: Քանի-քանի անգամ ականատես եղա բնության այդ հրաշքին: Տեսա, թե ինչպես է աղվեսը, փորը գետնին կպցրած, դարան մտնում, սանտիմետր առ սանտիմետր սողում առաջ՝ որսին մոտենալու համար, թե ինչպես է կատուն ժամերով անշարժանում, անթարթ աչքերով հսկում անզգույշ թռչնակին, ինչպես է գորտը նստում ճահճի ափին, համապատասխանորեն կոկռում ու սպասում, թե երբ մի ճանճ կամ թիթեռ կհայտնվի տեսադաշտում: Իսկ ինչպե՜ս են թռչունները համբերատար, ինքնազոհ, օրերով, շաբաթներով նստում ձվերի վրա, որպեսզի ձագեր հանեն իրենց սերունդը շարունակելու համար, ինչպես է փոքրիկ, աննշան ծիլը համառ համբերությամբ միլիմետր առ միլիմետր ճեղքում ասֆալտը՝ լույս

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# ԲՆՈՒԹՅԱՆ ԴԱՍԵՐԸ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

աշխարհ դուրս գալու համար:

Մենք բոլորս տեսնում ենք այդ ամենը, սակայն միշտ չէ, որ մտածում ենք տեսածի մասին, դասեր առնում: Եվ մեզ ամենից շատ պակասում են բնությունից առնված դասերը, որովհետև մենք շատ ենք հեռացել նրանից, մեծամտացել ու կարծում ենք, թե առանձին ենք նրանից, միայն նրա տերն ու նվաճողն ենք: Մինչդեռ ներդաշնակության խախտումը միշտ էլ անցանկալի է, ու ինչքան հեռանում ենք բնությունից, այնքան հեռանում ենք մեզնից, կորցնում մեզ տրըված հարստությունները: Դրա համար էլ չունենք անհրաժեշտ համբերություն, որն այնքան պետք է կյանքում և՛ որսորդին, և՛ ձըկնորսին, և՛ կոնստրուկտորին, և՛ ֆիզիկոսին, և՛ տիեզերագնացին, և՛ բոլորիս ամենաառօրյա կյանքում: Այնքան անհրաժեշտ, բնությունից մեզ տրված գանձը մենք գնալով պիտի ոչ թե ծախսենք աննպատակ ու կորցնենք, այլ ավելի զարգացնենք, ավելի մեծացնենք: Քանզի առանց մեծ համբերության ոչ կարող ենք դպրոցում լավ սովորել, ոչ կարող ենք լավ աշխատել, ոչ միմյանց հետ համերաշխ լինել, ոչ տիեզերքը նվաճել, ոչ գրքեր գրել, ոչ լավ բերք ստանալ, ոչ էլ ձուկ որսալ:

Դպրոցական տարիներին հաճախ էինք գնում Դեբեդից ձուկ որսալու: Կարթերը նետում էինք ջրի մեջ ու սպասում: Մեծամասնությունս համարյա դատարկ էինք վերադառնում: Սակայն մեր մեջ մեկը կար, որի կարթին միշտ ձուկ էր ընկնում: Մենք, իհարկե, նախանձում էինք, նույնիսկ քար էինք նետում նրա կարթի կողմը՝ ձկներին փախցնելու մտադրությամբ, կամ մոտենում, կարթերս նետում նրա կարթի մոտ: Բայց, միևնույն է, ոչինչ չէր ստացվում, ձանձրանում էինք, անընդհատ տեղից տեղ տեղափոխվում: Իսկ նա մեկը մյուսի ետևից դուրս էր հանում ձկներն ու նորից հանգիստ, ներքին մեծ խաղաղությամբ ու համբերատարությամբ կարթը նետում ջրի մեջ, սպասում: Նա պարզապես կարողանում էր սպասել, համբերություն ուներ: Իսկ մենք չէինք կարողանում համբերել: Այդպես էլ եղավ կյանքում՝ նա ինչի որ ձգտում էր, համբերատար աշխատանքով հասավ. իսկ մենք միշտ մեր անհաջողությունների պատճառներն ուրիշ տեղ ենք փնտրում:

Մենք պիտի կարողանանք սովորել բնությունից, մեր պապերի ու հայրերի օրինակով բնության հետ ներդաշնակության մեջ լինենք մեր ողջ կյանքում:

Պապս, իրոք, հարուստ մարդ էր: Նա բնության տերն էր, և բնությունն ընդունում էր նրան որպես տիրոջ, որովհետև զգում էր նրա ապրած ցավը իր վիրավոր եղնիկի կամ կոտըրված ճյուղի համար և սիրով բացում էր նրա առաջ գաղտնիքներով հարուստ իր գրքի փակ էջերը:

Պապս ողջ կյանքում կարդում էր այդ գիրքըն ու հարստանում: Դրա համար էլ անսպառ իմաստության տեր էր նա:




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԿՐՈՐԴ

# Ծագումը

Հայերի ծագման մասին խոսելուց առաջ անհրաժեշտ է պարզել, թե ո՞րն է հայերի ամենակարևոր առանձնահատկությունը, առանց որի հայեր և հայ ժողովուրդ չկան: Ի՞նչն է դարեր շարունակ հայերին տարբերել աշխարհի մյուս ժողովուրդներից, իրենց հարևաններից:

Ամեն ժողովուրդ մի շարք առանձնահատկություններ ունի: Այդպես է նաև հայ ժողովուրդը: Կան **էթնիկական** հատկություններ, որ նշանակում է ժողովրդացեղային կամ լեզվացեղային հատկություններ: Դրանցից են, օրինակ, տվյալ ժողովրդի մարդաբանական առանձնահատկությունները. ասենք՝ գանգի ձևը, դեմքի կառուցվածքը, աչքերի ու մազերի գույնը և այլն: Հայերն իրենց այս առանձնահատկություններով նման են իրենց հին մի շարք հարևաններին: Օրինակ, հայերին հատուկ է կլոր գանգը: Բայց այդպիսի գանգ ունեցել են նաև մեր հնագույն հարևանները՝ շումերները, աքքադացիները, խուռիները: Այդպիսի գանգ ունեն նաև, օրինակ, վրացիները և այլն: Դեմքի կառուցվածքով էլ հաճախ հայերը չեն տարբերվում իրենց որոշ հարևաններից: Ուրեմն, թեև հայերն ունեն իրենց մարդաբանական առանձնահատկությունը, բայց այն հաճախ նման է նրանց հարևանների նույն առանձնահատկությանը: Սա նշանակում է, որ հայկական մարդաբանական տեսակը վճռական առանձնահատկություն չէ հայերին մյուս ժողովուրդներից տարբերելու համար: Դա միայն հայ ժողովրդինը չէ:

Ապա՝ մի ժողովրդի կարևոր առանձնահատկությունն է նրա ազգագրությունը, որի մեջ մտնում են սովորությունները, հավատալիքները, տարազը, արվեստը և այլն:

Հայերի ազգագրական հատկություններն, իհարկե, յուրատեսակ են, տարբերվում են մյուսներից (քիչ հետո կտեսնենք, թե ինչով): Բայց երբեմն այդ հատկությունները նմանվում են մեր հարևանների նույն կարգի հատկություններին: Օրինակ, տարազը. Հայաստանի հյուսիսային մասերի և Վրաստանի տարազներն իրար նման են: Որոշ վայրերում էլ իրար նման են հայկական ու արաբական տարազները և այլն: Կամ՝ երբ նայում ենք հայոց Արարատի թագավորության հին բարձրաքանդակներին ու զարդերին և համեմատում Ասորեստանի կամ Բաբելոնի ժամանակներից պահպանված բարձրաքանդակների ու զարդերի հետ, շատ նմանություններ ենք տեսնում, իսկ երբեմն էլ դժվար է դրանք միմյանցից տարբերել: Նույնը վերաբերում է նաև զենքերին, այդ թվում՝ վահաններին, սաղավարտներին: Եվ կամ՝ սովորությունները, նիստուկացը, ժողովրդական արվեստը, օրինակ, շուրջպար հայերից բացի ունեն կամ ունեցել են Հայաստանի հարևան մի քանի այլ ժողովուրդներ: Կամ խորոված անում են ոչ միայն հայերը, այլև՝ մեր հարևանները, լավաշ հնուց ի վեր թխել են և՛ հայերը, և՛ ասորաբաբելացիները և այլն:

Այո՛, հայերի այս կարգի առանձնահատկությունների մի զգալի մասը, գլխավորապես արվեստը յուրօրինակ է (քիչ հետո դրա պատճառն էլ կիմանանք), բայց և այդ առանձնահատկությունները վճռական չեն և հիմնական էլ չեն հայ ժողովրդին տարբերելու հա-

Սկիզբը՝ «Պիոներ» № 9-ում:

մար աշխարհի ժողովուրդներից ու մանավանդ հարևաններից:

Դարերի ընթացքում հայերի, հայ ժողովրդի գլխավոր առանձնահատկությունը, որը չի ունեցել և չունի ուրիշ որևէ ժողովուրդ, լեզուն է: Հայոց լեզուն: Դրանով հնուց ի վեր խոսել է հայ ժողովուրդը, և դա եղել է միայն հայերի մայրենի լեզուն, խոսելու, մտածելու և դատելու լեզուն: Առաջին հերթին հենց իր լեզվով էլ հայ ժողովուրդը տարբերվել ու տարբերվում է աշխարհի մյուս բոլոր ժողովուրդներից, իր հին ու նոր հարևաններից: Ա. Իսահակյանը գրել է, որ Հայաստան նշանակում է հայոց լեզու: Իսկ վրաց ակադեմիկոս Ծանիձեն ասել է, որ հայ ժողովուրդ նախ նշանակում է հայոց լեզու, վրաց ժողովուրդ՝ վրացերեն լեզու:

Աշխարհի բոլոր ժողովուրդների համար չէ, որ լեզուն գլխավոր, տարբերիչ առանձնահատկություն է: Բայց պատմական ու աշխարհագրական այն շրջանում, որտեղ ծագել են հայերը և որտեղ ընթացել է մեր ամբողջ պատմությունը, մայրենի լեզուն հիմնականն է եղել ժողովուրդներին և լեզվացեղային միավորներին միմյանցից տարբերելու գործում:

Հիմա բնախոսներն ապացուցել են, որ մարդու մայրենի լեզվով է պայմանավորված նրա ուղեղի որոշ կենտրոնների կառուցվածքը և որ մարդու նյարդային համակարգում գլխավորն ու գերիշխողը լեզվական և խոսողական կենտրոններն են: Ահա թե ինչու մի ժողովրդի լեզուն իր կնիքն է դնում նաև նրա արվեստի, ինչ-որ չափով ազգագրության վրա: Օրինակ, Կոմիտասը ցույց է տվել, որ ամեն մի ժողովրդի երաժշտության յուրահատկությունը պայմանավորված է այդ ժողովրդի լեզվով, խոսքի հնչերանգով: Սա վերաբերում է նաև հայկական երաժշտությանը, որը ծագել է հայոց խոսքից:

Հայերենի լեզվամտածողության տարբերը կարելի է գտնել նաև հայկական ճարտարապետության, գեղանկարչության մեջ, նույնիսկ հայերի դեմքի բնորոշ արտահայտության մեջ, հայացքներում, շարժուձևերում:

Եվ այսպես. հայերի ամենագլխավոր, տարբերիչ առանձնահատկությունը հնուց ի վեր եղել և մնում է հայոց լեզուն: Բայց լեզուն ինքը՝ մարդն է: Քանի որ մարդն է խոսողը, լեզվով մտածողը: Մարդուց անջատ լեզու չկա: Ուրեմն, եթե մենք իմանանք, թե որտեղ և երբ է ծագել հայոց լեզուն, կիմանանք, թե որտեղ և երբ են ծագել այդ լեզվով խոսողները, այսինքն՝ հայերը:

(շարունակելի)



# «Խաղաղություն, բարեկամություն, երջանկություն»

Կամոյի շրջանի Կարմիրգյուղի դպրոցում գործում է ինտերնացիոնալ բարեկամության «Ուղեծիր» ակումբը: Նրա 30 անդամները բարեկամական-նամակագրական կապերի մեջ են մեր երկրի տարբեր հանրապետությունների պիոներդպրոցականների հետ: Ստացվող նամակները պատմում են աշխատանքային հաջողությունների, դպրոցականների լավ ու գեղեցիկ գործերի մասին: Նամակներ հաճախակի ստացվում են մերձբալթյան հանրապետություններից, Բելոռուսիայից ու Ուկրաինայից: Ավելի սերտ բարեկամություն հաստատվել է Էստոնացի երեխաների հետ:

Կիրովոգրադի դպրոցականների հետ ունեցած նամակագրական կապերի շնորհիվ ինտերնացիոնալ բարեկամության ակումբի անդամներն անցյալ տարվա սկզբներից սկսեցին ուսումնասիրել Կիրովոգրադյան 409-րդ հրաձգային դիվիզիայի անցած մարտական փառապանծ ուղու պատմությունը: Այժմ հետախույզ դպրոցականները գիտեն, որ Կամոյի շրջանում ու հարազատ գյուղում ապրում են այդ դիվիզիայի վետերաններից շատերը: Երեխաները վերջերս հանդիպեցին նրանցից մեկի՝ վաստակաշատ մանկավարժ Վարազդատ Մնեյանի հետ:

Դպրոցում բացվել է նաև ինտերնացիոնալ բարեկամության թանգարան, որի ցուցանմուշները հավաքել են պատանի թիմուրականները, կարմիր հետախույզները և բարեկամության ակումբի անդամները:

Դպրոցում տարին մի քանի անգամ բացվում է բարեկամների լուսանկարների ցուցահանդես: Վահանակներին զետեղված նկարները պատմում են երեխաների առօրյայի, նրանց որոնումների, ձգտում-





ների, երազանքների մասին: Վահանակներից մեկը պատմում է երեխաների մեծ բարեկամ Արկադի Գայդարի մասին, ահա և Իլյիչը՝ երեխաներով շրջապատված, կին տիեզերագնաց-օդաչու Վալենտինա Տերեշկովայի լուսանկարը Էստոնի դպրոցականների հետ:

Կարմիրգյուղի պատանի հայրենասերները սիրում են վրձնել հայրենի Գեղամա լեռները՝ իրենց երկնաքեր կատարներով, գեղեցկուհի կապուտաչ Սևանը, հայրենի Կարմիրգյուղը: Նկարներից մեկը պատկերում է բարձր բերքի վարպետ, դաշտավարական բրիգադի բրիգադավար Աշոտ Վարդանյանին, մյուսը՝ սովխոզի առաջավոր կթվորուհի— երկու հազարականներին: Նկարները շատ են ու բազմաբնույթ. գեղեցիկ են արևածաղկի դաշտերի, Գեղարքունյաց արտերի, Մանիչարի, գյուղական բարդիների, խնձորենիների ու տանձենիների գունավոր պատկերումները, որոնք շաղախված են հայրենի հողի նկատմամբ ունեցած սիրով:

«Երջանկություն թող միշտ լինի» նշանաբանով Էստոնիայի «Սյադե» պիոներական թերթի խմբագրատանը անցկացվեց պատանի նկարիչների գեղանկարչական աշխատանքների ցուցահանդես: Ակումբի անդամները «Սյադե» թերթի խմբագրություն ուղարկեցին Կարմիրգյուղում իրենց կատարած աշխատանքներից: Ծատերի հետ դպրոցական Գ. Գասպար-

յանի նկարը տպագրվեց թերթում և արժանացավ հատուկ մրցանակի:

— Անմոռաց են այն հանդիպումները, որ մենք ունեցանք Էստոնիայում և Լիտվայում՝ տեղի պիոներ-դպրոցականների հետ,— ասում է դպրոցի երիտասարդ մանկավարժ Վաչիկ Ճնգրյանը:— մենք մեր Մերձբալթիկայի բարեկամներին ներկայացրինք հայկական սրտահույզ ու կրակոտ երգեր, պարեր, Չարենցի, Սևակի, Շիրազի, Իսահակյանի, Սայաթ-Նովայի բանաստեղծություններից, ցույց տվեցինք գրքեր ու պատկերազարդ ալբոմներ: Սիրով ունկնդրեցինք էստոն ու լիտվացի դպրոցականների երգն ու նվագը, արտասանությունները, դիտեցինք նրանց ազգային տարազները, ծանոթացանք սովորույթների հետ:

Այժմ հյուրընկալ դպրոցից բերված հուշանվերները, բացիկները, գավաթները, պատվոգրերը, կրծքանշանները զարդարում են թանգարանի նոր բացված «Բարեկամության թևերով» ընդհանուր խորագիրը կրող երկու բաժինները:

Ծրագրվեց. և ծրագրի համաձայն Կարմիրգյուղի դպրոցականներին էլ իրենց հերթին հյուրեր եկան Վրաստանից, Լիտվայից, Էստոնիայից, Մոլդավիայից, Ուկրաինայից, Լենինգրադից, Կրասնոդարի երկրամասից, Ղրիմի մարզից, Կոմի Ինքնավար Հանրապետությունից: Նրանց ողջունեցին պատերազմի և աշխատանքի վետերանները, Սովետական Միության հերոս Գեղեն Միքայելյանը, ակումբի անդամները: Հյուրերն այցելեցին Սևանա լիճ, որի ափին Ծովազարդի և Այրիվանքի դպրոցականները դիմավորեցին նրանց համերգ-ողջույնով:

Պատերազմում զոհված հերոսների հուշարձանի մոտ տեղի ունեցավ միտինգ:

Կազմակերպվեց պլակատների մրցույթ «Ողջույն, խաղաղություն» թեմայով: Առաջին մրցանակը շնորհվեց ուկրաինացի բարեկամներին:

Փառատոնի աշխատանքներին ակտիվ մասնակցելու համար պատվիրակությունները պարգևատրվեցին պատվոգրերով:

Հյուրերի համար կազմակերպվեցին մի շարք էքսկուրսիաներ: Եվ հրաժեշտին բոլորը տարբեր լեզուներով, բայց բոլորին հասկանալի բացականչում էին.

— Խաղաղություն, բարեկամություն, երջանկություն:

ԱՆՈՒՇ ՎԱՐԴԱՆՅԱՆ,
ՆՈՐԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## Հանդիպում

Հավքն անտառից կգար,
Տղան՝ դպրոցից,
Իսկ առվակը խոնարհ
Կգար ժայռի ծոցից:
Տղան հավքին ասաց.
— Ի՞նչ ես տեսել ճամփին:
— Տեսա երկինք մի բաց,
Արև տեսա ամպին...
Տղան առվին ասաց.
— Ճամփին դու ի՞նչ տեսար:
— Տեսա ծառեր ծաղկած,
Ջրեր տեսա ու սար:
Տղան ասաց՝ ես էլ
Մաշտոցին եմ տեսել,
Սովորել եմ տառեր,
Կազմել եմ նոր բառեր:

## Ջարմանք

Զարմանում է իմ բալեն.
Աղբյուր է, բայց ջուր չունի՞,
Բույն է՝ առանց թռչունի՞:
Այգի է, բայց վարդ չկա՞,
Գյուղ է կարծես՝ մարդ չկա՞:
Տան մեջ ապրի միայն մու՞կ,
Գետը լինի առանց ձու՞կ:
Չի հասկանում դեռ բալես,
Չեմ հասկանում նաև ես:

ՆԿ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ






ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
Բանասիրական
գիտությունների դոկտոր

**Եթե հիշում եք, մի քանի տարի սրանից առաջ մեր ամսագրի էջերում պարբերաբար լույս էին տեսնում գրականագետ Լ. Հախվերդյանի զրույցները լեզվի վերաբերյալ: Այնուհետև, ի մի բերվելով, դրանք կազմեցին մի ամբողջ գիրք՝ «Զրույցներ լեզվի մասին» վերնագրով, որ տպագրվեց 1982 թ.-ին: Այժմ, գիրքը վերահրատարակության պատրաստելու կապակցությամբ, հեղինակը գրել է մի շարք նոր զրույցներ:**

**Ձեր ուշադրությանն ենք ներկայացնում դրանցից երկուսը:**

## ԵՐԿՈՒ ԽՈՍՔ ՏԵՐՄԻՆՈՒՍ ԱՍՏԾՈՒ ԵՎ ՏԵՐՄԻՆԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հռոմեական դիցաբանության մեծաթիվ աստվածների կողքին կար նաև մի աստված Տերմինուս անունով: Մենք գիտենք, որ անտիկ դիցաբանության մեջ կային անթիվ-անհամար աստվածներ, որոնք, ըստ հին հույների և հռոմեացիների պատկերացման, տնօրինում էին լույսն ու խավարը, կյանքն ու մահը, պտղաբերությունը, սերը, արհեստները, մարդկային ճակատագիրը, բանաստեղծությունը, երաժշտությունը, պատերազմները և այլն: Եվ այդ բոլորի մեծավորը, աստվածների աստվածը ըստ հույների՝ Զևսն էր, ըստ հռոմեական դիցաբանության՝ Յուպիտերը:

Իսկ ի՞նչն էր տնօրինում Տերմինուսը: Սահմանները: Նա սահմանների աստվածն էր: Հռոմեացիները նրա պատվին նույնիսկ տոնախմբություններ էին անում և դրանք կոչվում էին Տերմինականք:

Մենք գիտենք, որ ժամանակակից մշակույթի շատ ու շատ հասկացություններ անտիկ աշխարհից են գալիս: Տերմինուս աստծուց գոյացած տերմին հասկացությունը նույնպես: Դա ի՞նչ է նշանակում: Բաց անենք «Լեզվաբանական բառարանը» և կրկարդանք. «Այն բառը կամ բառակապակցությունը, որ արտահայտում է խիստ որոշակի որևէ գիտական հասկացություն: Տերմինը ցույց է տալիս արտադրության, տեխնիկայի, գիտության, արվեստի և այլ բնագավառների վերաբերվող որևէ առարկա, երևույթ, հատկություն, հարաբերություն և այլն: Ի տարբերություն ընդհանուր բառապաշարի մեջ մտնող բառերի, որոնք բազմիմաստ են, տերմինը իր գործածության տվյալ ոլորտում սովորաբար միանիմաստ է: Տերմինը կարող է լինել բաղադրյալ՝ երկու և ավելի բառերից բաղկացած»:

Այսքանը՝ սեղմ ու ամփոփ, հրաշալի բացատրություն, որի մեջ արժե մի փոքր խորանալ:

Նախ ուշադրություն դարձրեք «խիստ

որոշակի» բառերին, ասել է, թե՝ իր սահմաններն ունեցող (նկատեցի՞ք, թե ինչու տերմին բառը սահմանների աստծուց՝ Տերմինուսից է սերում):

Սահման, այսինքն՝ այստեղից մինչև այստեղ և ոչ ավելին, սահման ունենալ՝ նույնն է, թե չափ ունենալ, ծայր, եզր ունենալ՝ մինչև այս եզրը: Ահա թե ինչու մեր հին գրականության մեջ տերմին բառին եզր անունն էին տալիս, տերմինաբանությունն՝ եզրաբանություն, կոկիկ, հայեցի բառ, որ լավ արտահայտում է հարցի բուն էությունը (իսկ ինչու՞ ես այդ բառը չեմ օգտագործում. շատ պարզ՝ կիրառության մեջ գտնվողը, ընդունվածը մյուսն է):

Տերմին ասելով մենք հասկանում ենք մի որևէ գիտական կամ մասնագիտական անվանում: Կարծում եք, թե ամեն բան պա՞րզ է այդև: Շատ իզուր: Երբ խոսքը վերաբերում է լեզվին, վստահությունը վաղաժամ է գրեթե միշտ:

Ասում ենք՝ ջուր, սա սովորակա՞ն բառ է, թե գիտական անվանում, թթու՝ սովորակա՞ն բառ է, թե տերմին, գիտական անվանում: Հարցի առաջին և սխալ պատասխանը կլինի՝ դրանք սովորական բառեր են: Բերելով հենց այս օրինակները, լեզվաբան Ռ. Իշխանյանը շատ հստակ բացատրում է. այո, թթու-ն սովորական բառ է առօրյա լեզվում, դա համի մի տեսակ է նշանակում՝ թթու ջրից մինչև թթու դրած վարունգը, բայց, ահա, գիտական-մասնագիտական առումով դա միանգամայն ստույգ, միայն մեկ իմաստ ունեցող հասկացություն է՝ քիմիական որոշակի բաղադրություն: Այդպես էլ ջուրը. սովորական լեզվում նշանակում է ոչ միայն խմելու ջուր, այլև աղբյուր (հիշու՞մ եք՝ «Կոծերն ուսած՝ թռվռալով, ջուրն են իջնում աղջիկներ»), մրգի հյութ, առհասարակ հեղուկ, քրտինք («վրայից ջուրը թափվում էր»), անբովանդակ խոսք («գրքի կեսը ջուր է») և այլն, և այլն, իսկ մասնագիտական լեզվում ունի միայն մի իմաստ՝ $H_2O$, քիմիական որոշակի բաղադրություն, այսինքն՝ գիտական անվանում, տերմին: Այդպես էլ խաղ բառը, որ սովորական լեզվում կրում է բազմաթիվ իմաստներ, մասնագիտական լեզվում՝ որոշակի իմաստ, օրինակ, թատերագիտության մեջ՝ «դերակատարություն, դերասանական արվեստին հատուկ միջոցներով գեղարվեստական կերպարի ստեղծում»:

Դուք գիտեք, որ բացի ընդհանուր բնույթի բառարաններից, կան նաև մասնագիտական բառարաններ՝ լեզվաբանական, երկրաբանական, երաժշտական, բժշկական, իրավաբանական և այլն: Առաջին տիպի բառարանում բառերը տեղ են գտնում իբրև սովորական բառեր՝ իրենց տարբեր իմաստներով, մասնագիտական բառարանում՝ իբրև գիտական անվանումներ, այսինքն՝ տերմիններ: Այն էլ կա, որ դրանք կարող են բաղկացած լինել երկու կամ մի քանի բառից, ինչպես, օրինակ, «հոգևոր երաժշտություն», «վերլուծական երկրաչափություն», «բեմական խոսք», «արյան կարմիր գնդիկներ» և այլն:

Իմանանք նաև, որ հումանիտար, այսինքն՝ հասարակական գիտությունների մեջ տերմիններն այնքան ստույգ և որոշակի չեն, որքան ճշգրիտ գիտությունների մեջ (զուր չէ, որ դրանք ճշգրիտ են կոչվում): Ասենք, թվաբանական պրոգրեսիա, երկրաչափական պրոգրեսիա տերմինները կատարելապես ստույգ, անվիճելի, մշտական հասկացություններ են կամ նատրիում քլորը կերակրի աղն է՝ NaCl բաղադրությամբ, և դա վիճելու բան չէ: Բայց, ահա, գրականագիտության մեջ նույնիսկ այնքան տարածված տերմիններ, ինչպես ռոմանտիզմը կամ ռեալիզմը, վեճի առարկա են, տարբեր մասնագետներ տարբեր երանգներ են տալիս դրանց: Երբ մաթեմատիկոսներն ասում են բնական թվեր, հասկանում են պարզ հաշվումից առաջացող թվերը՝ 1, 2, 3, 4, 5 ... և ուրիշ ոչինչ, ստույգ և անտարակուսելի: Բայց երբ երաժշտագետներն ասում են «թեթև երաժշտություն», ապա մասնագետները հասկացության ընդհանուր ըմբռնումով համաձայն լինելով, կարող են վիճել տերմինի նրբերանգների, երաժշտական այս կամ այն գործն այդ տերմինով բնորոշելու շուրջը: Սա չի նշանակում, թե գրականագիտության կամ արվեստաբանության բոլոր տեր-

միններն անստույգ են, նշանակում է, որ այդ գիտությունների շատ տերմիններ դեռևս կարոտ են ճշտումի:

Բոլոր պարագաներում տերմինի բարձրագույն հատկանիշը ճշգրիտ լինելն է, եզրերի որոշակի լինելը: Որքան ստույգ, այնքան ավելի լավ: Եվ լեզվի զարգացման աստիճանը որոշում է նաև այն, թե որքան հարուստ է տերմիններով, և որքանով ստույգ են դրանք:

Մնում է ավելացնել, որ հայոց լեզուն սկսել է տերմիններ մշակել և կուտակել 5-րդ դարի սկզբից ի վեր, մեսրոպատառ առաջին գրքի՝ Սողոմոնի առակների (Աստվածաշնչից առնված) թարգմանությունից: Ժամանակակից հայերենի շատ տերմիններ, ինչպես՝ իրավագիտություն, օրենք, տուրք, մակերես, կամար, բալ, ածական և այլն, հայ հին և միջնադարյան գրքերից են գալիս: Հետագա դարերում, տնտեսական հարաբերությունների, գիտության և մշակույթի զարգացման հետ, հայերենը նույնպես ունեցավ և այսօր էլ ունի բազմաթիվ տերմինների ստեղծման կամ փոխառման կարիք: Մեր ժամանակներում՝ հատկապես, երբ բուռն զարգացում ապրող գիտությունն ու տեխնիկան ամեն օր նորանոր տերմիններ են հանում ասպարեզ, և այնքան առատորեն ու արագորեն, որ լեզուն չի հասնում ընթացքի ետևից: Երբեմն պատահում է այնպես, որ լեզուն հևիհև առնում է տերմինը նույնությամբ, ապա ժամանակ անց՝ գտնում ինքնուրույն համարժեքը: Հիշում եմ՝ մեր մամուլում գրվում էր կոնֆրոնտացիա, մինչև որ մի անհայտ շնորհալի մարդ դա փոխարինեց առճակատում փայլուն համարժեքով:

Եվ, իհարկե, սա է ճիշտ ճանապարհը՝ որոնել, գտնել, հորինել օտարամուտ տերմինների լիարժեք փոխարինողներ, որքանով լեզվի հնարավորությունները թույլ են տալիս, այլապես՝ փոխ առնել նույնությամբ:

Հետագայում դրանց հայերեն համարժեքները կարող են գտնվել, կարող են չգտնվել, կարծում եմ, որ այդպես են վարվում բոլոր լեզուները: Եվ հայերենը չի կարող բացառություն կազմել:

# Դպրոցականների ձիրքով ու ձեռքով



Քննական սարք
Կամոյի ՊՏ կայանի ռադիոխմբակ

Երևանի Շահումյան շրջանի պիոներների պալատում բացվել էր հանրապետության պատանի տեխնիկների և «Հմուտ ձեռքեր» խմբակների լավագույն աշխատանքների ցուցահանդեսը:

Ցուցահանդեսը նվիրված էր Հաղթանակի 40-ամյակին և բացվում էր Էջմիածնի դպրոցականների «Զոհված մարտիկների հուշարձանը Էջմիածնում» աշխատանքով: Պատին՝ «Թամանյան դիվիզիայի մարտական ուղին» մեծադիր քարտեզի վրա, կարմիր-կանաչ հաստ գծով ու ազդանշանային լամպերով ցույց էր տրված դիվիզիայի մարտական ուղին՝ Երևանից մինչև Բեռլին: Աշխատանքի հեղինակը Արարատի № 2 դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ Օրբելի Խաչատրյանն էր: Հետաքրքիր ու բազմաբնույթ էին Արարատի դպրոցականների ներկայացրած աշխատանքները: «Երևանի բերդի գրավումը» (պլաստիլին), այնուհետև «Զինվորը վերադարձավ», «Հաղթանակի պար» գոբելենները՝ գունային հետաքրքիր լուծումներով, «Երևան», «Զանգեզուր» գորգերը, նուրբ ու զարդանախշ ասեղնագործությունները, մաքրամե, փայտի փորագրություններով դրվագված տար-

բեր չափսերի զարդատուփեր, ասեղնաման: Եզակի էին իրենց տեսակի մեջ էլեկտրոնային ու ռադիոսարքավորումները, ավիամոդելները, հրթիռամոդելները, նավամոդելները:

Միացրու ղեկավարող սարքը, և կարուսելները կսկսեն պտտվել, կվառվի կրակը Ծիծեռնակաբերդում, կերգեն գունաերաժշտական շատրվանները Լենինի հրապարակում:

Երեմ Սարգսյանը (Նաիրիի շրջան) ներկայացրել էր լավաշ թարմացնող ավտոմատ սարքի մոդել: Մետաղյա գլանաձև խողովակի մեջ կարելի է կախել չորացած լավաշները, ձագարաձև հատակից փչում է տաք խոնավություն, և հացը թարմանում է: Նրա մյուս «Ունիվերսալ աստիճանները» ցուցադրվել է «Հայաստանի դիզայներ» միութենական ցուցահանդեսում:

Ալավերդու հրթիռամոդելիստների պատրաստած «Ուրարտու» տիեզերանավի և «Թռչող ափսեի» մոդելները միացնելուց հետո իսկական տիեզերանավին հատուկ աղմուկ ու ծուխ են արձակում, վառվում են լամպերը, ավտոմատ բացվում ու փակվում են խցիկները, և թվում է՝ հիմա կպոկվեն տեղից ու դուրս կգան ուղեծիր:

Պարզվում է, որ նավաշինությունը միայն տղաների մենաշնորհը չէ: Արթիկի № 3 դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի Հերմինե Դավոյանի պատրաստած մոդելը չէր զիջում մյուսներին, ավելին, արտաքին տեսքը ավելի կոկիկ էր ու հավաք:

Ապարանի շրջանի պատանի տեխնիկները ցուցահանդեսին ներկայացրել էին փայտամշակման ունիվերսալ հաստոցի, կարող հաստոցի նմուշներ: Ապարանի երեխաների մասին անցյալ տարի «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթում հատուկ հոդված տպագրվեց, նշվեց նաև կայանի շենքի անհարմար պայմանները, որոնք մինչև այսօր էլ չեն բարելավվել:

Ցուցահանդեսում հատուկ ուշադրության արժանացան Լենինյան շրջանի պատանի տեխնիկների կայանի ավտոմատ ֆիլմադարանը, գալվանական ավտոմատ սարքը, մոծակներ քշող երաժշտական սարքը, ավտոմատ վերելակը, որը գրավելով փոքր մակերես, կարող է ծառայել որպես ավտոհավաքակայան, ծաղկանոց:

Շնորհակալությամբ նշենք ուսուցիչների աշխատանքը, որոնք իրենց սաներին համբերությամբ սովորեցրել են տեխնիկայի բարդ լեզուն, նաև հուշել մեր հնագույն արվեստների նրբին գաղտնիքները:

Աշակերտների հետ նրանց ամենօրյա աշխատանքի արդյունքն է այս ցուցահանդեսը:



«Երևան 12»
Արարատի շրջանի պիոներպալատի գորգագործական խմբակ




Պատանի տեխնիկների կենտրոնական կայանի հրթիռամոդելայի՞ն խմբակ

Լենինականի ՊՏ կայանի հրթիռամոդելային խմբակ
Արագընթաց

Լուսանկարները՝
ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# Խնձորենին

Զանգակներ են խնձորները՝
Խնձորենու ճյուղերից կախ,
Քամին եկավ՝ զնգզնգում են,
Ղողանջում են նրանք ուրախ:

Տերևն ասում է տերևին.
«Երազի մեջ ասես լինեմ,
Թռչուններն են գալիս, գնում,
Թռչող զանգեր ասես լինեն»:

Կեղևն ասում է կեղևին.
«Հեքիաթի մեջ ասես լինեմ՝
Մրջյուններն են վերուվարում
Եվ մրջնորեն ղողանջում են»:

Եվ վերջ չկա ղողանջներին.
Եվ տոն է միշտ սաղարթի մեջ.
Այ թե ինչու խելոք հավքը
Բույնն է հյուսում ճյուղերի մեջ:

# Ձին

Ձիու բաշը բոցի նման
Թրթռում է քամու հետ,
Ձին թվում է կախարդական,
Որ կտրել է հազար գետ:

Եվ անցել է հազար բյուր,
Հազար սար ու արահետ,
Լեռան նման մեջքը ամուր,
Իսկ ոտքերը՝ բարակ նետ:

Աչքերի մեջ՝ երկու արև,
Իսկ զավակին՝ ծիածան,
Նա վարգում է վե՜րև, վե՜րև,
Ուր չկա ոչ մի կածան:

Պիտի թռչի ձմեռ, ամառ,
Աշուն, գարուն և հավետ,
Մինչ սովորեն գիլ խրխնջալ
Լեռ ու քարափ, դաշտ ու գետ:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

# Թե չգիտեք...

Թե չգիտեք, չգիտեք,
Ջվարթիկին հարցրեք.

Ջյունը ինչու՞ է ճերմակ,
Իսկ լճակը՝ կապուտակ:

Մայրիկն ինչու՞ է մայրիկ,
Եղբայրիկը՝ եղբայրիկ:

Արևն ինչու՞ մեկ այրում,
Մեկ շոյում է, փայփայում:

Ամպը ինչու՞ զայրացավ,
Անձրև տեղաց, մեղմացավ:

Ինչու՞ եղավ համազարկ,
Հրթիռ, լույսեր բազմերանգ:

Ինչ չգիտեք, չգիտեք,
Ջվարթիկին հարցրեք:

Այնքան շատ է նա կարդում,
Որ մայրիկն է նախատում.

— Ախ, իմ գիտունն, դու գիտե՞ս,
Տասն անց կես է, տասն անց կես...

Ինչ չգիտեք, չգիտեք,
Ջվարթիկին հարցրեք...

Մի բան միայն չգիտի՝
Որ քնելն էլ ժամ ունի:

# Ո՞վ է սխալ և ինչո՞ւ

Ես դասղեկին չեմ ասի,
Ես մայրիկին չեմ ասի,
Բայց Սերոբի հետ գոռոզ
Երբե՞ք, երբե՞ք չեմ խոսի:

Երբ հարցրի ես նրան՝
Ինչպե՞ս խնդիրը լուծեմ,
Խուլ գոռաց քթի տակ.
«Մազդ՝ երկար, խելքդ՝ կարճ»:

Ես խնդիրը կլուծեմ...
Թեկուզ ողջ օրը տևի,
Բայց դու, Սերոբ, լավը չես,
Քեզ ես երբեք չեմ ների...

# ՀԱՅՐԵՆԻՔ ԱՍՎԱԾԸ ՀՈՂՆ Է...

Մի սարի լանջին ցորենի արտ ու խնձորի այգի է եղել: Արտն իր ռանչպարն է ունեցել, այգին՝ իր այգեպանը: Ռանչպարն իր ցորենից այգեպանին է բաժին հանել, այգեպանը իր խնձորից՝ ռանչպարին: Ու նրանք հաշտ ու խաղաղ ապրել են և այդպես էլ կապրեին մինչև իրենց կյանքի վերջը, եթե մի չարաբաստիկ օր արտն ու այգին իրար չխառնվեին: Մի օր հորդ անձրև է տեղում, վարար հեղեղներ են լինում, ու սարի լանջի խիստ թեքության պատճառով վերի արտը հողով, ծլով, ցողունով, իր ամբողջ տարածքով սողք է տալիս, իջնում ու ներքևի այգու բարձր փեշըն իր տակ է առնում: Այգեպանը բարկանում է ու ռանչպարից պահանջում իր արտը ետ քաշել: Ռանչպարն իր հերթին է բարկանում ու այգեպանից պահանջում իր այգին ետ քաշել: Ու նրանց միջև վեճը սրվում է: Արտատերն ասում է՝ էս հողն իմն է, այգեպանը, թե՝ չէ, իմն է: Գյուղացիք գալիս են, նրանց շուրջը հավաքվում, որ հաշտեցնեն: Բայց չեն կարողանում, ընդհակառակը, իրենք են վեճի մեջ քաշվում: Մի մասն ասում է՝ էս հողն այգեպանինն է, մի մասն էլ, թե՝ չէ, արտատիրոջն է: Բայց փաստորեն ոչ հող է եղել, ոչ արտ և ոչ էլ այգի: Ավելի շուտ հողից, արտից, այգուց մերկացած սարի լերկ լանջեր են եղել:

Սա պատահել է վաղուց, հին ժամանակներում, Լոռվա աշխարհի Ծնող գյուղում: Ու այդ հին օրերի հետ կարող էր և այս պատմությունը մոռացվել, եթե այլևս այդպիսի հողեր չլինեին: Դիլիջանի, Լոռու, Շամշադինի, Եղեգնաձորի, Ղափանի և մի շարք այլ շրջաններում հողի սահքը դեռևս տեղիք է տալիս ցավալի հետևանքների: Սակայն այսօր դա վեճերի տեղիք չի տալիս: Մարդիկ իրենց ուժը, եռանդն ու կարողությունը դատարկ վեճերի մեջ վատնելու փոխարեն բնական աղետը կանխում են: Փոխում են հեղեղատների հունը, կառուցում են ամբարտակներ, օժանդակ շինություններ, կատարում ծառատունկ:

Հայրենիք ասվածը հողն է, և ամեն ինչ արվում է այն պահպանելու և զորացնելու համար:

ԼԵՎՈՆ ԶԱՎԱԽՅԱՆ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



## ԱՅԼ ԱՂԲՅՈՒՐ ԱՅԼԱԲԵՐԴ-ԱՅԼԱԲԵՐՔ ԱԼԱՓԱՐՍ

Մեկի աղավաղածը ժողովուրդը շտկում է մի ակնթարթում, իսկ ժողովրդի աղավաղածը չեն կարողանում շտկել նույնիսկ դարերը: Այդպիսի աղավաղում է Հրազդանի շրջանի Ալափարս գյուղի անունը:

Այս գյուղի արևելյան կողմում մի հորդառատ աղբյուր կա, որ ավելի տարեց է, քան գյուղն ու նրա անունը:

Հնում, երբ այս աղբյուրից ջուր էին վերցնում, ասում էին.

— Սա սովորական ջուր չէ, պատվական է, այլ աղբյուրից է:

Այդպես՝ այլ աղբյուրից ասելով, գյուղը կոչեցին Այլ աղբյուրից, Այլաբերդից, Այլաբերք, Ալափարս:

— Անփիղծ բան է,— ասում են մերօրյա ալափարսեցիք,— հների արածը մի բանի նման չէ: Ալափարս անվան մեջ մեր աղբյուրը կորել է, բայց իրականում այն շարունակում է կարկաչել:

## ԱԽՈՌ

Մի անգամ Խարբերդի դաշտում, Արածանի գետի ձախ ափին, հայոց Պապ թագավորն այնպես տարվեց որսով, որ չկարողացավ ժամանակին վերադառնալ բանակատեղ: Մութը վրա հասավ, մի կողմից էլ հորդ անձրև սկսվեց, և արքայի ասպախումբը ստիպված էր գիշերելու տեղ որոնել մերձակա գյուղում:

Գեղջավագն իրարով անցավ: Դե արի և արքայի համար պատշաճ օթևան գտիր: Այս գյուղում չկար մի այնպիսի տուն, որ զուտ մարդու կացարան լիներ: Բոլոր գետնափոր հյուղակները կիսով չափ տներ էին, կիսով չափ՝ գոմեր, մի կողմը մարդն էր ապրում, կողքին՝ անասունը:

Ահա այդ տներից մեկում էլ գիշերեց Պապ թագավորը: Բայց նա չկարողացավ աչք կպցնել:

— Սա ոչ թե տուն է, այլ՝ ախոռ,— կրկնում էր արքան,— գյուղն էլ գյուղ չէ, այլ մի մեծ ախոռ:

Այս դեպքից հետո գյուղը անվանակոչվեց Ախոռ և այդ անունով էլ գոյատևեց մինչև 1915 թվականը:

## ԱԽՈՐԺԱՀԱՄ ԱԽՈՒՐՅԱՆ

Սկզբում Ախուրյան գետը փոքրիկ աղբյուր է եղել Ախորժահամ անունով: Նրանից մի քանի կաթիլ խմողը ոչ հիվանդանում էր, ոչ հոգնում, ոչ էլ կորցնում ախորժակը: Դե ո՞վ չէր ուզենա այդպիսի ջրի համն առնել: Քա-

նի գնում Ախուրժահիամ աղբյուրի մասին պատմում են ավելի շատ խոսել: Սակայն չկարծեք, թե ամեն տեսակ համբավից շահում է հայրենիքը: Ախուրժահամի համբավը առնելով, օտարները ճամփա ընկան Հայոց աշխարհ: Սրանք գալիս էին, բայց ետ չէին դառնում: Այս ամենը տեսնելով, հայոց ողջախոհության աստվածուհի Նանեն մտահոգության մեջ ընկավ: Ուրիշ հնար չըգտնելով՝ նա աղբյուրը դարձրեց տրղմոտ ջրով մեծ գետ:

— Ինչու՞ պղտորեցիր մեր աղբյուրը,— հարցրին մարդիկ աստվածուհուն:

— Հենց որ օտարաշուրթները հեռանան մեր հողից, ջուրը կդառնա անապական և կստանա նախկին համը,— պատասխանեց Նանեն:

Շատ ժամանակներ անցան: Ախուրժահամ անունն աղավաղվեց, դարձավ Ախուրյան, բայց ջուրը չզուլալվեց:

## ՄԱՐԸՆՏՈՒՆԻՔ ԱԿՆ

1022 թվականին Արծրունյաց իշխանական տոհմը Սեբաստիա տեղափոխվելով, Արևմտյան Եփրատ գետի աջ ափին, գեղատեսիլ բարձունքի վրա հիմնում է մի բնակավայր և կոչում Մարընտունիկ: Բայց այդ անունը երկար չհնչեց: Մի դար հետո Անի քաղաքից շատ հայեր են գաղթում այստեղ և սկսում տունտեղ կառուցել: Զարմանալի բախտ ունեն այս անեցիները: Նրանց և հաջողությունն է շատ լինում, և ձախորդությունը: Եփրատի աջափնյա բարձունքի վրա ին տեղ քլունգ էին խփում շենքի հիմնափոսի համար, ակն էր ժայթքում:

— Էլ ի՞նչ Մարընտունիկ,— ասացին մարդիկ,— ներքևում՝ ակն, լանջերին՝ ակն, վերևում՝ ակն, սա ակն է, ակն:

Եվ Ակն կոչվեց նորակառույց քաղաքը, որ հետո դարձավ հայոց հանճարեղ հայրենների ոստան:

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

# Թումագի կաղնին

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Տարիներ առաջ ոչ ոք չէր կարող ենթադրել, որ վերջապես մեր դասարանն է գալու Ենոքի Համոն: Իսկ նա իսկապես եկավ: Հագին իր հին մարզաշապիկն էր, որ ինչ-որ ժամանակ ինչ-որ մարզիկի ծառայելուց հետո դեն էր նետվել ու ընկել ուղիղ Համոյի ուսերին: Դրանից հետո շապիկն ու Համոն անբաժան էին: Համոն մեծանում էր, շապիկը՝ փոքրանում, իր փոքրության մեջ հուսահատորեն պարտակելով մի մարզիկի, որը արժանի մրցակից դեռ չէր ունեցել, և նրա ձեռքերը պարապությունից քոր էին գալիս: Դասի ընթացքում Համոն այդ քորին քորելով էր դիմադրում, իսկ դասամիջոցներին միջանցքում ձեռքն ընկնողին բռնում, խփում էր պատին:

Ձմեռվա ցրտին, երբ հին մարզաշապիկը չէր պատսպարում նրան, Համոն մտնում էր տարրական դասարանները՝ հոկտեմբերիկների ընկերությունն ու նախաճաշը վայելելով տաքանում: Իսկ աշնան արևներին նա կանգնում էր ձորալանջի համարյա ուղղահայաց պատի մոտ ու նույն հոկտեմբերիկների վայելչագրության տետրերից թղթե ինքնաթիռ պատրաստում նրանց համար ու թռցնում:

Ձորալանջի ուղղահայաց պատի մոտ, այնտեղ, ուր խմբվում էին նրանք, կոչվում էր Ջուխտակ սյուն, թեև այնտեղ եղած սյունը եզակի էր: Այդ նույն տեղն ունեք նաև երկրորդ անունը՝ Թումագի քար,

որ տալիս էր միայն մի մարդ՝ տավարած Սերգոն: Նա մեր տեսած ամենատարեց մարդն էր, անհամար պատմություններ գիտեր: «Թումազի քարին չմոտենաք,— ասում էր նա,— Եռնոքի թոռան խելքին չընկնեք, դա անտեր քար է»: Եթե լսող կար, Սերգո պապը սկսում էր պատմել: Բայց գյուղում նրան հավատում էր երևի միայն Սապետ նանը, որն էլ տավարած Թումազի մասին նրա պատմությունների միակ ունկնդիրն էր: Սերգո պապի պատմելով, ձորի վրա, անդունդի եզրին աճում էր փոքրիկ մի կաղնի, որ շատ անգամ քաշել-տարել է ներքև նայողներին: Վերջին զոհը եղել է իր մանկության ընկեր Թումազը, որ փորձել է հորթի համար մահակով պոկել ձորաքերանին աճած կաղնու ճյուղը: Քաշել է ճյուղը, մոտեցրել, որ պոկի, ճյուղը նորից ետ է գնացել: «Էս լվակն ինձ հաղթի՞,— կատաղել է Թումազն ու մահակը բաց թողնելով, լուռ ու մունջ, առանց ձայնի նետվել անդունդը: Սերգո պապն այս կարճ պատմությունը անում էր երկար, երբեմն մի ողջ երեկո, Սապետ նանը նրան լսում էր, գոգնոցի փեշով խոնավացող աչքերը սրբելով ու մրմնջալով. «Նրա մերը մեռնի...»:

— Վաղվանից պիտի օդանավակայան կառուցենք,— մի օր իր անվանը վայել պարտադրող ձայնով պահանջեց Համոն ու նստելով ձորապռնկին, ոտքերը կախեց ներքև:

Մենք նորից լարվեցինք: Ձորաբերանին մոտենալու համար մենք թույլ էինք ու մեղք, նաև չգիտեինք, որ կա բարձրության նկատմամբ վախի հիվանդություն, այդ պատճառով բոլոր հրաժարվողներր մեր աչքում վախկոտներ էին:

Մի քանիսը փորձեցին մոտենալ Համոյին: Առաջինը Սկյուռ Համլետն էր, որ ընկուզենիների կատարներով տնկարանի մի ծայրից հասնում էր մյուսը: Նրան հետևեց Ծպուռ Գրիգորի փոքր եղբայր Տիգրանը, որ կրում էր Ժեռ անունը, որովհետև ձեռքը խոթել էր ակումբի պատի բոլոր թռչնաբների մեջ: Իսկ Գրիգորն արդեն Համոյի կողքին էր:

Հետո Ցուլը կանգնեց գերեզմանաքարի վրա ու իսկական ճառ ասաց: Ինչպես ընկեր Հովհաննիսյանը կասեր՝ բավական գրագետ, բայց որոշակի սխալներով: Ըստ Համոյի, եռոտանի էլեկտրասյունը պետք է՛ դառնար շտաբ: Համոն շտաբի պետին կարգադրեց վաղն ևեթ փոխել միակ լամպը, որ տարին բոլոր ջարդված-կախված էր էլեկտրասյան կայմից, ինչպես թափված ընկույզի կճեպներր տնկարանի ծառերից: Հետո ցուլը մի ակնթարթում Մուրազի վզից հանեց վզկապն ու մագլցելով լուսասյան կատարը, ոտքերը ծալելով, հնդիկ յոգի նման նստեց հորիզոնական խաչափայտի վրա: Երբ նա վզկապը կապեց լուսասյան կատարին, ներքևից մի քանիսը ծափահարեցին: Քիչ հետո ցրվեցինք, որովհետև սկսվեց տեղատարափ անձրև:

Հաջորդ օրն, իսկապես, չորսով թռիչքուղին մաքրեցին, ցանկապատեցին հիվանդանոցի հին մահճակալների ցանցով: Հետո սկսվեցին «փորձնական թռիչքները»:

Դասերից հետո մենք մի շնչով հասնում էինք Ջուխտակ այուն: Ամեն մեկը գիտեր իր տեղը և կանգնում էր ոչ շատ հեռու, որպեսզի իր վախկոտ ներկայությամբ սիրտ տար չորս քաջերին, և ոչ շատ մոտ, որպեսզի ամեն անգամ գոմաղբի քթոցը շալակին անցնող-դարձող Սերգո պապը չնկատեր մեր վախկոտությունն ու չասեր.

— Էդ Եռնոքի թոռը չի թողնում մոտենա՞ք, թե՞ վախենում եք: Ճիշտ եք անում, որ վախենում եք: Էդ քարափին ոչխարներն էլ չեն մոտենում:

Մենք շատ էինք: Կարող էինք ծեծել չորս քաջերին, մանավանդ որ Համոն դրա համար առիթներ տալիս էր: Բայց մենք մի տեսակ թախծում էինք: Երբ թռչում էր հերթական թղթե ինքնաթիռը, մոռանում էինք և՛ թախիծը, և՛ մեր հեռակա պատժվածությունն ու նրանց հետ հիացած բղավում՝ ու՜ ու՜ ու՜...

Մենք երբեմն դառնում էինք համարձակ, մի քանի ամսական ուլերի նման թռչկոտում քարից քար ու նույնիսկ փորձում վիճարկել Համոյի կարծիքը.

— Քամի է,— գոռում էինք մենք,— թղթի մեջ քար դրեք:

... Ժամանակի հետ շատ բաների մոռացությունը հիմա թույլ չի տալիս ճշգրիտ ասել, թե երբ և ինչպես տեղի ունեցավ խզումը: Խոսքը այն անսպասելի շրջադարձի մասին է, որ տեղի ունեցավ մեր մանկության լանջի միագիծ ճանապարհի վրա և որին ոչ ոք ու երբեք չէր սպասում: Բայց բանը միայն տարիների մեջ չէ: Հետո էլ իրար հանդիպելիս մեր դասարանի տղաները փորձում էին մտաբերել ինչ-որ պահ Սերգոյի Վարդանի կամ



Համոյի այդ օրերի ասածներից ու արածներից, ինչ-որ բան, որը վկայեր, թե եղածը ոչ միայն պատահականություն չէր, այլև խորապես սպասելի էր: Սերգոյի Վարդանը հետու կանգնողների մեջ ամենաաննկատն էր, նա հաճախ ձորապոնկին ավելի էր մոտենում, քան չորս քաջերից որևէ մեկը: Մի թելադրող գրավչություն կար նրա աչքերում, երբ նա կանգնում էր մեզ հետ, բայց ասես մեզ հետ չէր: Թելադրում, որ վեր էր կասկածից: Այն օրը, երբ Համոն որոշեց օգտվել Մուրազի վայելչագրության տետրերից, ոչ ոք չէր մտածում, որ մեր մանկության առաջին օդանավակայանը վերանալու է հաջորդ օրը և եռոտանի յուսայան մազութած ոտքերի վրա չեն ավելանալու այն ակոսները, որ ամեն մի թռթե ինքնաթիռից հետո դանակով գծում էր Ծպուտ Գրիգորը: Բնական է, որ մենք ուշ հասկացանք կատարվածի իմաստը: Բայց ավելի լավ է ասենք, թե ինչ տեղի ունեցավ:

Ճիշտն ասած, արտասովոր ոչինչ տեղի չունեցավ մինչև այն պահը, երբ Մուրազը փորձեց հակառակվել Համոյին: Հակառակվեց, բայց նույն պահին Տիգրանը ոստյունով ճանկեց նրա պայուսակն ու բերեց Համոյին:

— Հիմա մի բուռ կլացե՞ս,— արհամարհանքով ասաց Համոն:

Մուրազը ջրված նայում էր մեզ ու կարծես չէր տեսնում ոչ մեկին: Նրա աչքերի արտահայտությունից ու արձակած անորոշ հնչյուններից կարելի էր հասկանալ, որ Մուրազն, այո, լացելու վրա է: Բայց Համոն սպասելու սովորություն չուներ: Նա ոտնաթաթը պայուսակի բռնակի մեջ մտցնելով, նստեց ու ոտքը կախեց ձորի վրա: Նույն պահին Մուրազի հայացքը հանդիպեց Տիգրանի հայացքին, ու զայրույթի լացը պոռթկաց Մուրազի մեջ:

— Լավ, մի տզզա, հիմա կհանեմ,— նորից շտապեց Համոն:— Ծպուտ, մի լար բեր:

— Թողնեիր մի բուռ լացեր, էլի,— կչկչաց Գրիգորն ու ցանկապատից մի ժանգոտ լար հանեց: Ինչ-որ արկածային ու անսպասելի բան կար այդ պահի մեջ: Ծպուտ Գրիգորը, որ ամենամոտն էր կանգնած Համոյին, հետո ասում էր, որ ինքն այդ պահին նրա աչքերի մեջ անծանոթ ինչ-որ բան է տեսել: Գուցե Համոյի հանդեպ ունեցած մեր պատկերացումն էր ուրիշ, բայց մեզ թվաց, թե նա

ամբողջովին կործել է իրեն: Գուցե Թումաչի կաղնին, որ անցյալում շատերին զրկել էր կյանքից, առաջին պահին Համոյին զրկել էր ինքնավստահությունից: Կաղնին կար թե չկար, բայց նրա մասին եղած պատմությունը այդ պահին հիշվել էր ինքն իրեն, ու մենք սարսափում էինք Համոյի համար:

— Էս ի՞նչ եղավ,— կրծում էր նա եղունգները,— կաղնու ճյուղը ներքև է իջել: Ծպուռ, բռնիր, ընկնում եմ...

Վերջին բառերը Համոն ասում էր դեռ չմոտեցած ձորապռնկին: Եվ այստեղ էլ տեղի ունեցավ այն, ինչի մասին տարիներ անց իրար հանդիպելիս հիշում են մեր դասարանի տղաները: Լայնաթիկունք, պինդ գլխով ու բոլոր գլխապինդների նման գլխից ձեռք քաշած Համոն տեր կանգնեց իր գլխին: Մեր աչքի առաջ նա կծկվեց, փոքրացավ, խեղճացավ ու դարձավ երևի թե անանուն մի արարած, որ այդ պահին արժանի էր միայն կարեկցանքի:

Ի՞նչ էր կատարվել: Գուցե մեզանից ամեն մեկը այդ պահին առաջին անգամ աղոտ գիտակցում էր, որ հափշտակվելով խորհրդավոր արկածների պատմությամբ, իր համար մի սիրուն հեքիաթ էր հյուսել Համոյի մասին, որը ոչ ավել, ոչ պակաս մեզ նման մի տղա էր, ու ափսոսում էինք, որ դա իրոք հեքիաթ էր: Նույնիսկ Մուրազը լացն ընդհատեց, տեղում սառած՝ նայում էր հեռացող Համոյի ետևից:

Սերգոյի Վարդանը ժպտաց, լսելով կատարվածի մասին Մուրազի պատմած տարբերակը: Դասերից հետո նա մեզ հետ եկավ դեպքի վայրը, ոտքով հրեց ժանգոտ ցանկապատն ու մտավ ներս: Մի պահ, և համարյա ձուլվեց անդունդի խորապատկերին ու մեջքով շրջվելով դեպի անդունդը, նմանվեց աշտարակից նետվող ջրացատկորդի, կռացավ, կախեց ոտքերը, ապա փորը, կուրծքը: Մի պահ ուղղահայաց պատի պռունկին երևում էին նրա սպիտակ մատները, որոնք աստիճանաբար լարվեցին:

Դժվար չէր կռահել, թե ինչպիսի սարսափներ ծնվեցին ու մահացան մեր աչքերում, մինչև որ Վարդանը մի անգամ էլ ճոճվելով բարձրացավ վեր՝ ոտքերի արանքում սեղմած պայուսակը:

— Թումաչի կաղնին սիրում է ինձ,— հայտարարեց նա հպարտ՝ ոչ թե իր արածի, այլ այն բանի համար, որ Թումաչի կաղնին սիրում է իրեն:



ԱԶԱՏ
ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

## Առաջին երգերը գարնան մասին

Հայտնի է, որ գարունը բանաստեղծների ամենասիրած թեման է: Ի՜նչ հրաշալի տողեր են նվիրել գարնանը Հովհաննիսյանը, Թումանյանը, Իսահակյանը, Տերյանը, մեր մյուս բանաստեղծները:

Բայց եղել է ժամանակ, երբ գարնան մասին բանաստեղծություններ չէին գրում, ոչ այն պատճառով, որ գարունը չէին նկատում:

Հոգևոր բանաստեղծությունը, որ քրիստոնեության հաստատումով տիրապետող էր դարձել, անտարբեր էր ծաղկող բնության գեղեցկության նկատմամբ:

Հետո եկան նոր ժամանակներ, և բանաստեղծներն սկսեցին իրենց ստեղծագործություններում ներկայացնել շրջապատող աշխարհի բազմազան գույները, մարդն սկսեց գիտակցել իր և բնության իրական միասնությունը:

**Ահա եղև պայծառ գարուն,**
**Հոտն բուրեաց անուշ վարդուն,**
**Ձայնըն քաղցրիկ գայր պլպուլուն,**
**Եւ եղանակըն հավերուն:**

(Ահա եղավ պայծառ գարուն, Անուշ վարդի հոտը բուրեց, Լսվում էր սոխակի քաղցր ձայնը Եվ թռչունների երգը):

**Ծաղկանց դաշտերն գույնզգույն,**
**Սըփռին տերևքըն ծառերուն,**
**Հորդորեցան ջուրք գետերուն,**
**Լողան ձըկունք ի մեջ ծովուն:**
**Տերև սըփռին առաւօտուն,**
**Ցողն ի վերայ իջեալ յամպոյն...**

(Ծաղիկների դաշտերն են գույնզգույն, Ծառերը ծածկվում են տերևներով, Հորդացան գետերի ջրերը, Ձկներն են լողում ծովում: Առավոտյան տերևներն են փռված, Ամպերից նրանց վրա ցողն է իջել):

Սա գարնան մասին առաջին երգերից է: Գարուն ու ծաղիկ, ցող ու տերև նոր-նոր էին մտնում բանաստեղծության մեջ: Բանաստեղծի այս տողերում ամենահուզիչը հենց մանկական այդ հրճվանքն է, որ ծնվում է տերևներին իջած ցողի և հորդացած գարնան գետերի տեսքից: Եվ այն բանից, որ ինքը կարող է իր ուրախությունը կիսել ուրիշների հետ, երգել «պայծառ գարունը»: «Ահա եղև պայծառ գարուն», — այս անպաճույճ տողի մեջ այնքան զգացմունքի թարմություն կա...

Բանաստեղծության հեղինակը՝ Կոստանդին Երզնկացին, մեր քնարերգության ամենասիրված անուններից է: Նրա կյանքի մասին քիչ բան գիտենք: Ապրել է 13—14-րդ դարերում հայկական հարուստ ու բազմամարդ Երզնկա քաղաքում:

Նա մեր այսօրվա քնարերգության հիմնադիրներից մեկը կարող է համարվել: Վեցյոթ հարյուր տարի առաջ գրված նրա երգերը իրենց անմիջականությամբ, ինքնատիպությամբ, պատկերների նրբությամբ ու բարձր արվեստով այսօր էլ զարմացնում են ընթերցողին:

**Այսօր եղայ հոտմըն գարնան,**
**Սիրով հըռչեմ ի բուրաստան,**
**Ջինչ սառն ու պաղ ցուրտ ձըմերան,**
**Ի մեր տեսուս հալածեցան:**

(Այսօր եղա գարնան քամի, Սիրով հնչում եմ բուրաստանում, Ցուրտ ձմեռվա սառնությունը Մեր տեսքից հալածվեց):

**Այսօր իմ բանս է յորդորել՝**
**Ջերդ ի քարէ ակն որ բըխել.**
**Բան գեղեցիկ կամիմ շինել,**
**Ջերայ հավսար սիրտս ի հավան:**

(Այսօր իմ խոսքն է հորդել՝ ինչպես աղբյուրը, որ բխում է քարից, Ուզում եմ գեղեցիկ բանաստեղծություն հորինել, Որովհետև սիրտըս հավան է ամեն ինչի): Գեղեցիկ բանաստեղծություն հորինելու իր ցանկությունը նա անմիջականորեն կապում է գարնանային բնության հարուցած ուրախության հետ:

Բայց դեռ տեսեք՝ ինչ մեծ զորություն է նա վերագրում իրեն՝ բանաստեղծին, և բանաստեղծությանը.

**Հրաման կուտամ ես ծաղկընուն՝**
**Փըռեն տերև խիստ գուն ու գուն.**
**Ջի է հասարակաց գարուն,**
**Այլ բանդ չըկայ և ոչ զընդան:**

(Հրաման կտամ ես ծաղիկներին՝ Փռեն իրենց գույնզգույն թերթերը, Որովհետև գարունը բոլորի համար է, Եվ այլևս բանտ ու զնդան չկա): Բնության ծաղկումը և մարդկանց ուրախությունը լրացնում են միմյանց, ծաղիկները պետք է բուրեն բոլորի համար. ահա բանաստեղծի բնապաշտությունը ինչ մարդասիրական երանգ ունի: Եվ հետո, ինչքա՜ն առաջ է գնացել միջնադարի մարդը, որ հրամայում է բնությանը. չէ՞ որ առաջ նա հրամայող համարում էր միայն և միայն Աստծուն:

Զգացվում է, որ անամպ չի եղել նրա կյանքը: Բանաստեղծություններից մեկում նա բողոքում է մարդկանց չարությունից և նախանձից (Ոմանք չար են հետ ինձ ու նախանձով են յիմ վերայ): Եվ վերջապես, միջնադարը մնում էր միջնադար, ուրախության ու սիրո երգերը եկեղեցուն դուր գալ չէին կարող: Բայց մարդը, որ մի անգամ զգացել էր աշխարհի ու կյանքի գեղեցկությունը, հրճվել վարդով, առավոտյան ցողով ու ծաղկած այգով, չէր կարող այլևս հայացքը թեքել դրանից:

Երզնկացուց սկիզբ առավ գարնան, սիրո և աշխարհը վայելելու հզոր բանաստեղծական շունչը, որ հետո այնքան հրաշալիքներ ծնեց մեր բանաստեղծության անդաստանում: Հովհաննես Թլկուրանցին, Խաչատուր Կեչառեցին և ուրիշներ շարունակեցին Երզնկացու գործը, զարգացրին ու կատարելության հասցրին մեր բանաստեղծության լեզուն ու պատկերները:



ՇՈՒՇԱՆ ՂԱԶԱՐՅԱՆ

# Ուսուցիչը

Իջևանի կուլտուրայի տան ցուցափեղկում տեսնելով Սևքարի դպրոցականների բանաստեղծությունները իրենց ուսուցչի՝ Նարեկ Հովսեփյանի ձևավորմամբ, մտաբերում եմ Աղստևի հովտի միջնադարյան դպրոցների գրիչ-ծաղկողներին, որոնց արվեստի ներշնչող ազդեցությամբ աշխատել է նա: Ո՞վ գիտե, նրանց հեռավոր ժառանգը չէ՞ արդյոք սևքարեցի նկարչության ուսուցիչը, որն այսպես՝ վայելչագրության հին ու բարի կանոններով, սրտի ջերմությամբ արտագրել, ձևավորել է իր սաների բանաստեղծական առաջին թռթռվանքները: Նույնքան ճաշակով ու հոգածությամբ էին ձևավորված Սևքարի հարյուրամյա դպրոցի միջանցքներն ու լաբորատորիաները, որոնց դիպել էր Նարեկ Հովսեփյանի ձեռքը:

Սևքարի հին դպրոցը քանդվել է, նորը կառուցվել է հնի տեղում՝ երկհարկանի, տիպային, լուսավոր ու ծաղկառատ միջանցքներով, կահավորված կաբինետներով, հարուստ գրադարանով, առարկայական ցուցափեղկերով, տարբեր վահանակներով, հայ դասական գրողների ձեռագրերի լուսապատճեններով... Դրանց շրջանակները փայտարվեստի առանձին նմուշներ են, որոնք պատրաստվել են դպրոցի արհեստանոցում: Այստեղ են ձևավորվել նաև դասասենյակների դռները: Դպրոցում գործում է հեռուստատեսային կենտրոն: Երբ եթերում ուսումնական հաղորդում կա, միջանցքում վառվում է նախազգուշացնող ցուցանակը: Հեռուստացույցներ են տեղադրված բոլոր կաբինետներում ու միջանցքներում: Ժամանակակից սարքավորումներով են հագեցած մաթեմատիկայի երկու կաբինետները: Լուսատախտակի վրա գրված են մաթեմատիկական բանաձևեր: Ճիշտ պատասխանը գտնելու դեպքում վառվում են հարց ու պատասխանին

զուգահեռաբար միացված լամպերը: Սարքավորումները պատրաստել են աշակերտները, իրենց ուսուցչի՝ Յուրի Մկրտումյանի օգնությամբ:

Դպրոցի նախապատրաստական դասարանը հեքիաթների կախարդական աշխարհ է. ծաղկամաններն անգամ բոլորված են հեքիաթների սյուժեները վերարտադրող խայտաբղետ նկարներով: Գրատախտակի վերևում, լուսավորված պատին փակցված է հայոց մեծադիր այբուբենը:

Դասերից հետո կյանքը շարունակվում է էսթետիկայի կաբինետում: Հարցերը բազմաբնույթ են. հայ ժողովրդի պատմությունից, գրականությունից, արվեստից: Ամեն ինչ չէ, որ դասերին հասցնում են իմանալ: Երեկ հեռուստացույցով ֆիլմ են նայել, հետաքրքիր է, ընկեր Հովսեփյանը ինչ կարծիքի է, բանաստեղծություն են գրել, պետք է նրան ցույց տալ, տեսնես ինչ կասի: Սենյակը տրամադրող է, տաք, ողողված ծաղիկներով ու լույսով: Պատերին Նարեկ Հովսեփյանի նկարներն են՝ մեծարենցյան պոեզիայի մարմրուն գույներով, վարդագույնի անմարմին, ցոլացիկ երանգներով:

Սեղանին բանաստեղծական ձեռագիր մի ժողովածու կա:

— Իմ գիրքն է, ինքս եմ կազմել... այո՛, բանաստեղծություններ էլ եմ գրում,— մեղավոր ժպտում է նա:

Նայում եմ երիտասարդ ուսուցչի մարգարտաշար ձեռագրին ու ափսոսում, որ հնուց եկած վայելչագրություն հրաշալի առարկան այժմ տեղ չի գտել դպրոցական ծրագրում: Ես հիշում եմ, թե մեր ուսուցչուհի Շողիկ Ոսկանյանը ինչ խստությամբ էր հետևում, հիշեցնում, թե տառի որ մասնիկը պիտի հաստ, ընդգծված գրվի, որը՝ բարակ, մազիկներով:

—Վայելուչ գրելը նույնքան կարևոր է, որքան տառաճանաչությունը,— միշտ ասում էր նա:

Տասնյակ գրչածայրերի մեջ ընտրում էր մեկը, սկզբում ինքն էր փորձում, հետո տալիս էր մեզ: Այնուհետև մի քանի բառ էր թելադրում կամ՝ նախադասություն: Գրավորի տակ չէինք ստորագրում: Հավաքում էր և, որովհետև բոլորիս առանձին-առանձին հրաշալի գիտեր, ձեռագրից իմանում էր, թե որը ումն է:

Ավելի ուշ, բարձր դասարաններում, երբ գրիչ-թանաքները փոխարինվեցին ինքնահոսներով, մենք կորցրեցինք մեր անհատական ձեռագրերը: Այն նմանվեց ատեստատների հետ մեզ տրված ստանդարտ տեքստերով բնութագրերին. պարզվում էր, որ դասարանի 37 աշակերտներս նույն բնավորությունն ենք ունեցել:



Լուսանկարները՝
ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Նարեկ Հովսեփյանի բնավորությունը նման է իր ձեռագրին. համբերատար, խաղաղ, թեթև հումորով է վերաբերվում այն բանին, որ բանասեր լինելով, նկարչություն է դասավանդում: Մայրաքաղաքում նա ձևավորել է մի շարք հեղինակների՝ Անահիտ Պարսամյանի, Արշավիր Դարբնու, Արամ Սաթունցի գրքերը, մամուլում տպագրվել են իր բանաստեղծությունները: Գործերը վատ չէին գնում:

Սակայն Նարեկ Հովսեփյանը ամենից շատ սիրում է տնից դպրոց տանող իր ամենօրյա ճանապարհը, որն անցնում է լույս առավոտի մեջ բացվող ցողոտ կակաչների, հին գերեզմանոցի մամռած քարերին թեքված խոնարհ սեզերի միջով, սիրում է իր հարյուրամյա դպրոցի աղմուկները: Նրա դասերը հայրենի բնաշխարհն ու մարդկանց սիրելու, գեղեցիկը տեսնելու ու վերարտադրելու ամենօրյա դժվարին աշխատանք է երեխաների հետ:

Ներկայացնում ենք մի փունջ Սևքարի դպրոցի աշակերտների բանաստեղծություններից։


ՆՎԱՐԴ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ


ՌՈՒԴԻԿ ՔՈՉԱՐՅԱՆ


ՍԵՐԳՈ ԴԱՎԹՅԱՆ


ԱԼԻՆԱ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Երբ որ խոտը կանաչի,
Առուն ուրախ կարկաչի,
Դաշտը՝ շքեղ ու ծաղկուն,
Ջեռքով կանի, կկանչի։

Լեռան ձյունը կհալչի,
Տխուր ցուրտը կննջի,
Հովվի շունը կհաչի,
Ծիտն էլ կերգի մեր այգում։

ՆՎԱՐԴ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Մայիս, մայիս.
Գարնանն ամիս,
Դու ծաղկաբույր
Կանաչ աշխարհ
Թռչնաթևիկ,
Թռչնապաշար,
Հարազատ ծոցը
Դու պաղ ջրման
Եմ բանալի
Շքեղ ամռան։
Առուներին
Ձայնն եմ լսում,
Թռչուններին
Երգը դրսում,
Վարդը՝ բացվող
Կրակ է այ,
Ձյունն՝ հալվող
Աղբյուր վարար։
Արի, մայիս,
Գարուն բարի,
Իմ օրերը
Վարդանալի։



Փոքրիկ գետակն ուրախ-ուրախ
Բարձր սարից իջնում էր ցած,
Երկու որսորդ՝ քաջ ու անվախ,
Որսից էին գալիս հոգնած՝
Շրջել էին անտառ ու ձոր,
Չէին բռնել ճնճղուկ ու լոր:
Մէկի սիրտը ձկնիկ ուզեց՝
Շորը հանեց, գետը սուզվեց,
Մեկն էլ՝ հոգնած, քարին թիկնած,
Քնեց հանկարծ՝ բերանը բաց:
Կապույտ-կապույտ երկնքի մեջ
Ծիծաղում էր արևը պերճ:
Գող ագռավը թռավ, եկավ,
Լողացողի շորը տարավ,
Մի մեծ ճանճ էլ իրեն հերթին
Այդ քնածի քիթ-մռութին
Քեֆ է արել, երգ է ասում.
Ձայնն էլ ահա ինձ է հասնում:
Փոքրիկ գետակն ուրախ-ուրախ
Բարձր սարից ցած է իջնում,
Թողած դրսում գնդակ ու խաղ՝
Նստել այսպես երգ եմ ասում:

ՌՈՒԴԻԿ ՔՈՉԱՐՅԱՆ

Ունեմ երկու սիրուն եղբայր.
Մեկը՝ փոքրիկ, մեկը՝ մեծ,
Մեծը՝ արդեն հասուն մի այր՝
Փոքրին մի գիրք նվիրեց:
Գիրքը վերցրեց Մովսեսն ուրախ
Ու կարդում է անդադար,
Իսկ Արթուրը՝ բարի, անվախ,
Բանակ մեկնեց քաջաբար:
Ու նամակ ենք երբ ստանում
Մենք Արթուրից մեր բարի,
Այն Մովսեսը ինքն է կարդում
Ու ասում է. «Շատ ապրի,
Մի մութ գիշեր սահմանի մոտ
Նա բռնել է թշնամուն,
Տայգայի մեջ այն աղմկոտ,
Կածանի մոտ ոլորուն:
Գեներալն է կանչել նրան,
Ասել՝ ապրե՛ս, հայորդի,
Քաջաբազուկ Դավթի նման
Դու թշնամուն միշտ հաղթի»:

ԱԼԻՆԱ ՄԱՐԳԱՐՅԱՆ





Վերածննության դարաշրջանի խոշորագույն գեղանկարիչներից է Լեոնարդո դա Վինչին: Նրա արվեստը վաղուց ի վեր երկրպագման ու հիացմունքի առարկա է: «Ջոկոնդան», «Աստվածամայրը քարանձավում» և այլ գործեր այժմ էլ գերում են իրենց անզուգական հմայքով: Սակայն, բացի նկարչությունից նա զբաղվել է գիտության և տեխնիկայի բազում ճյուղերով: Մաթեմատիկա և մեխանիկա, ֆիզիկա և աստղաբաշխություն, քիմիա և երկրաբանություն, աշխարհագրություն և բնագիտություն, մարդու կազմաբանություն և բնախոսություն, լեզվաբանություն և գրականու-

Լեոնարդո Դա Վինչի, «Ինքնանկար»

## ուշանը

Լոմբարդիայի դաշտերով ու մարգագետիններով իր ջրերը գալարող Տիչինո գետի զմրուխտ ափին բուսել էր մի չքնաղ շուշան: Մնացած բոլոր դաշտածաղիկները հարգանքից խոնարհվում էին նրան՝ աշխատելով ստվերով իսկ չխաթարել նրա հրաշք գեղեցկությունը: Իսկ նա վերձիգ կանգնած գետեզերքին, քամու դեմ հըրճվագին ծածանվելով, անհոգ զմայլվում էր ջրի հայելում բեկված սեփական պատկերով:

Շուշանի դյութիչ գեղեցկությամբ տարված, կալյակները վճռեցին ինչ էլ լինի տիրանալ նրան: Շուտով շամբշոտաշուրթ գետը փրփրեց ու եռաց: Մոլեգին պագշոտությամբ համակված, ալիքները գնալով ավելի ու ավելի խռովահույզ էին դառնում: Իսկ շուշանը, կայծկլտուն ջրացայտքերի մեջ անմատչելի ու հպարտ՝ պերճանում էր իր նազելի ցողունի վրա: Այնժամ ալիքներն ավելի անզուսպ սկսեցին կոծել, լափլիզելով ու քանդելով ափը, մինչև որ այն փուլ եկավ փոթորկուն անդունդի խառնարանի մեջ, հետո տանելով հպարտ գեղուհուն:

## իթեռնիկն ու բոցը

Իրիկնային շամանդաղում ճախր անելով ու վայելելով աղջամուղջի հաճելի զովությունը, խատուտիկ թիթեռը որտեղից որտեղ նշմարեց հեռվում առկայծող կրակը: Նա անմիջապես ուղղվեց դեպի լույսը և, երբ հասավ, պտույտներ գործեց գիշերալամպի շուրջը և զարմանքով զննեց այն: Ինչ լավիկն է այս անծանոթը: Երկար զըմայլվելուց հետո թիթեռնիկը վճռեց մոտիկից ծանոթանալ պայծառ լուսատուի հետ, խաղալ մի քիչ, ինչպես որ այգում զվարճանում էր ծաղիկների հետ՝ տարուբերվելով նրանց ծաղկապսակի ճոճքում: Մի քիչ ետ թռնելով՝ թիթեռնիկը կտրուկ շրջվեց ու ճախրեց դեպի բոցալեզվակը՝ ասես հրապուրելով ու խաղի հրավիրելով նրան:

Բայց... ինչ-որ բան կասկածելի

թյուն. ահա այն ասպարեզների ոչ լրիվ ցանկը, որտեղ փայլատակել է նրա հանճարը:

Մեծ իտալացին շուրջ 7000 էջ կազմող գաղտնագրված ձեռագրեր է թողել, որոնց վերծանումից պարզվել է, որ Լեոնարդոն այցելել է Հայաստան և այստեղ կատարած իր ճամփորդության մասին մտադիր է եղել մի ամբողջ գիրք գրել:

Քչերը գիտեն, որ Լեոնարդո դա Վինչին նաև հեքիաթագիր է: Նրա հեքիաթներում հավատը բարու հաղթանակի նկատմամբ, լավատեսությունը համահնչուն են մարդուն ազատ ու երջանիկ տեսնելու երազանքին:

Լեոնարդո դա Վինչիի հեքիաթները, առակները ու լեգենդները Վերածնության արվեստի փայլուն դրսևորումներն են: Մինչդեռ դրանք արարողը բոլորովին հետամուտ չի եղել գրողի դափնիներին՝ իրեն համարելով «գրականության հարցերում անիրազեկ» մարդ: Ինչպես գեղանկարչության մեջ, այստեղ ևս նրա համար բնորդ է եղել բնությունը, կյանքը՝ այդ մեծ ուսուցիչը, որից, նրա ասելով, «սովորելիք ունեն անգամ գրողները»:

Ներկայացնում ենք մի շարք Լեոնարդո դա Վինչիի հեքիաթ-լեգենդներից:

խոցեց նրան ու վեր շպրտեց:

Իջնելով լուսամուտի գոգին, գիշերալամպի մոտ, թիթեռնիկը զարհուրանքով տեսավ, որ կորցրել է թաթիկներից մեկը ու բոլորակ խանձել թևերը:

— Ինչու՞ պիտի այսպես լիներ,— տարակուսած մրմնջաց թիթեռնիկը և պատասխան չգտավ: Նրա մտքով իսկ չէր անցնում, որ այդքան դյութիչ կրակը կարող էր և այդքան չար լինել: Փոքր-ինչ ուշքի գալով՝ նա բացեց թևիկները ու նորից ճախրեց: Մի քանի պտույտ գործելով գիշերալամպի շուրջը, նա հանգիստ թևեց դեպի բոցալեզվակը՝ կամենալով ճոճվել նրա վրա: Բայց տեղնուտեղը տապալվեց նենգավոր ճրագը սնող ձեթի մեջ:

— Ինչ դաժան ես եղել դու,— մըրմընջաց դալկահար թիթեռնիկը:— Ես քեզ մոտ բարեկամության եկա, բայց մահ գտա քո մեջ: Ու՜շ, շա՜տ ուշ հասկացա, թե ինչքան չար ու աղետաբեր ես դու: Եվ թանկ նստեց վրաս քեզ հետ խաղ անելու իմ անմիտ ցանկությունը:

— Խեղճ իմ թիթեռ,— խոսեց գիշերալամպը,— մի՞թե իմ մեղքն է, որ լուսնալույսով ճառագած ծաղիկ չեմ, ինչպես միամտորեն կարծեցիր: Իմ կոչումն է՝ մարդկանց առաջ լույս սըփռել: Իսկ ովքեր իմ կրակն են ուզում, միշտ պատժվում են:



## արմրա-կատարը

Որդր կտուցին առած կարմրակատարը թռավ դեպի բույնը, բայց... ձագերն այնտեղ չէին: Մինչ ինքը որսի էր եղել՝ չարամիտ մարդիկ բնից դուրս էին քաշել ձագերին, տարել:

Վայնասուն դրած, կարմրակատարը սկսեց փնտրել անհետացած ձագուկներին: Անտառով մեկ տարածվել էին նրա ողբն ու կականը, բայց պատասխան չկար ու չկար:

Մյուս օրն առավոտյան տարաբախտ ծնողին հանդիպեց սիրանոսը և հայտնեց, որ դեռ երեկ նրա ձագուկներին տեսել է մի գյուղացու տան մոտ:

Ուրախությունից իրեն կորցրած, կարմրակատարն ինչքան ուժ ուներ թռավ դեպի գյուղ և շուտով հայտնվեց այն տան մոտ, որի մասին ասել էր բարի սիրանոսը:

Կարմրակատարն իջավ տանիքի քիվին, դեսուդեն նայեց, բայց բան չր-

տեսավ: Նա թռավ դեպի կալերը. այստեղ էլ շունչ-կենդանի չկար: Իսկ երբ դժբախտ ծնողը բարձրացրեց գլուխը, տեսավ մարագի լուսամուտին դրսի կողմից կախ տված վանդակը: Նրա մեջ ծվարել էին իր գերի ձագուկները: Կարմրակատարը սրտապատառ նետվեց դեպի վանդակը: Ծնողին ճանաչելով՝ ճտերն սկսեցին աղեկտուր ծըլվըլալ՝ աղերսելով՝ ինչքան հնարավոր է շուտ ազատել իրենց գերությունից: Գործի դնելով ճանկերն ու կտուցը՝ կարմրակատարը տանջահար եղավ երկաթյա ճաղերը բացելու վրա: Բայց նրա բոլոր ճիգերն ապարդյուն անցան: Այնժամ բարձր ու սրտաբեկ հեծեծանքով նա թռավ ու գնաց:

Հաջորդ օրը վշտից ու կարոտից քշված կարմրակատարը նորից երևաց վանդակի մոտ, ուր տվայտում էին տարաբախտ ձագուկները: Կաթոգին հայացքով նա երկար-երկար զննեց ձագուկներին, ապա կտուցը հերթով դրեց նրանց լայնաբաց բերանները:

Ծնողը կտուցով թունավոր խոտ էր բերել, և քիչ անց բոլոր կարմրակատարիկները ոտքերը ձգեցին...

— Լավ է մեռնել, քան տապակվել գերության մեջ,— դառնակսկիծ մրրմընջաց հպարտ թռչունը և թևին տվեց, հեռացավ դեպի անտառ:



# ավալուսնը

Հենց որ հավալուսնը ուղևորվեց կեր հայթայթելու, դարանամուտ իժն անմիջապես գողեգող սողաց դեպի նրա բույնը:

Փափկափետրիկ թռչնակները խաղաղ քնած էին:

Օձը ընդհուպ մոտ սողաց բնին: Նրա աչքերը վառվում էին չարաթույն փայլով, և սկսվեց մի սոսկալի նախճիր:

Մեկական մահացու խայթոց ստանալով, անխռով նինջ մտած թռչնակները քնած էլ մնացին:

Արածից գոհ, եղեռնագործը ետ սողաց դեպի թաքստոցը, որպեսզի այնտեղից լիառատ չարախնդա մայր թռչնի ողբերգության վրա:

Շուտով որսից վերադարձավ հավալուսնը: Տեսածից շանթահար՝ թևավորն այնպիսի ողբուկոծ դրեց, այնպիսի ողբուկոծ, որ անտառի բնակիչները, աննախադեպ դաժանությունից ցնցված, համրացան, քար կտրեցին:

— Ձեզանից հետո ես էլ կյանք չունեմ,— ձագուկներին նայելով կերկերաց տարաբախտ ծնողը:— Թող ես էլ մեռնեմ-կորչեմ ձեզ հետ: Եվ նա սկսեց կտցով ծվատել իր կուրծքը: Տաք արյունը շիթերով ցայտեց վարդի պես բացված վերքից՝ ցողելով անշնչացած ձագուկներին: Հետզհետե թալկանալով, մեռնող հավալուսնը հրաժեշտի մի վերջին հայացք նետեց ռսպանված ձագուկներին, բնին և... անդ էր տեսանել զարմանալին: Օ՛, հրաշք, նրա հեղած արյունը և մայրական սերը կենդանացրել էին ձագերին՝ նրանց ետ խլելով մահվան ճիրաններից: Եվ այնժամ հավալուսնը թեթևացած սրտով ավանդեց հոգին:



# արն ու ճանապարհը

Կար-չկար աշխարհում մի գեղեցիկ ու խոշոր քար կար: Առուն փայլեցնելու չափ հղկել ու կոկել էր նրան, և քարը շողշողում էր արևի դեմ: Սակայն ժամանակի հետ առուն ցամաքեց, իսկ քարն այդպես էլ լանջին ընկած մնաց: Նրա շուրջը փռված էր ծնկահար խոտով ու վառ ծաղիկներով ծածկված հովիտը:

Բարձունքից քարին լավ երևում էր ձորակով անցնող սալարկած ճանապարհը, որի եզրին խճի ու գլաքարի կիտուկներ էին:

Մնալով միայնակ՝ առանց առվակի վաղեմի խոխոջյունի, քարն սկսեց

կարոտով ավելի հաճախ նայել ցած՝ մշտական եռուզեռի մեջ գտնվող ճամփին: Մի անգամ էլ թախիծր նրան այնպես խեղդեց, որ այլևս չդիմացավ ու ճչաց.

— Ընպես մենակ ու չորացլուխ հազար տարի հո չե՞մ մնալու: Խոտ ու ծաղիկն ինձ ի՞նչ: Շատ ավելի լավ չի՞ լինի, եթե կողք-կողքի ապրեմ եղբայրներիս հետ՝ բանուկ ճանապարհի մոտ, ուր աղբյուրի պես կյանք է հորդում:

Այս ասելուն պես նա շարժվեց իր հնամենի տեղից ու գլխիվայր գլորվեց, մինչև որ հայտնվեց ճամփեզրին՝ իր նմանակ քարերի մեջ:

Ով ասես, ինչ ասես չէր երթևեկում ճանապարհով. և՛ երկաթե անիվներով սայլեր, և՛ ձիերի սմբակներ, կովերի, ոչխարների ու այծերի կճղակներ, և՛ պճնապաճույճ, երկարաճիտ կոշիկներ, և՛կոշտուկոպիտ գեղջկական ոտնամաններ:

Քարը հայտնվեց ճամփի բանուկ մասի խառնարանում, ուր նրան ճընշում ու ամեն կողմից սեղմում էին, կոխկրտում, քերծքերծում, ցեխոտում, մեկ-մեկ էլ նա գլխովին թրքակոլոլ էր լինում:

Ու՛ր կորավ նրա երբեմնի փայլը: Հիմա նա տրտմաթախիծ հայացքը հառում էր վեր՝ դեպի այն զառիթափը, ուր ինքը (երանելի՜ օրեր) հանգիստ ու խաղաղ ապրում էր բուրումնավետ ծաղկանց մեջ: Նրան այլևս բան չէր մնում, քան ապարդյուն երազել կորսված հանգիստն ու մենությունը վերագտնելու մասին: Ջուր չեն ասում. «Ունեցածը չենք պահպանում, կորցնում ու ողբում ենք»:

Պատմությունս նրանց վրա է, ովքեր անխոհեմաբար, ունայնամտորեն լքում են հեռավոր գյուղական վայրերը՝ ձըգտելով աղմկոտ ու մարդաշատ քաղաքները, ուր անմիջապես հայտնըրվում են անընդհատ վազվզոցի, անհագուրդ ծարավի, մշտական նեղությունների ու տագնապների գերության մեջ:

Ռուսերենից թարգմ.՝
ԹԵՎՈՍ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ







Լեոնարդո դա Վինչիի գծանկարներից

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Անձրևների շրջանում Բանգլադեշի բըրընձի դաշտերում սովորաբար լսվում է բարձր կռկռոց։ Գորտերը, արթնանալով քնից, հայտնում են իրենց գոյության մասին։ Սակայն վերջին ժամանակներս կըռկըռոցը նկատելիորեն թուլացել է։ Բանն այն է, որ այդ երկկենցաղների թիվը երկրում կրճատվել է։ 1300 տոննա գորտի թաթիկներ են սառեցված վիճակում ուղարկվում ԱՄՆ և Արևմտյան Եվրոպա՝ թանկարժեք ռեստորանների խոհանոցները։ Հանրապետության տեղական իշխանությունները խրազեկ են գորտաորսի տխուր հետևանքներին, սակայն միջոցներ չեն ձեռնարկում, որովհետև գորտերի որսը դարձել է այդ վայրերի բնակչության համար հաց վաստակելու միակ միջոցը։

● Հնդկական ջունգլիների հազվագյուտ թռչուններից է վայրի աքաղաղ սոնեբատը։ Իր թանկարժեք փետուրների համար այդ թռչունը գտնվում է անհետացման սպառնալիքի տակ։






ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ




Ծխելը չարիք է. այս մասին երկու կարծիք լինել չի կարող։ Ծխախոտի բույսը պարունակում է նիկոտին ալկալոիդը, որն ուժեղ թույն է։ Մեծ դոզաների դեպքում նիկոտինը առաջացնում է նյարդային համակարգի կաթված, որի հետևանքով շնչառությունը դադարում է, և սիրտը կանգ է առնում։ Նիկոտինի սուլֆատը օգտագործվում է որպես միջատասպան նյութ գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարելու համար։ Սակայն ծխախոտն օգտագործվում է նաև իբրև դեղամիջոց նյարդային համակարգի բուժման համար։

Հետաքրքիր պատմություն է կապված ծխախոտի բույսի հայտնաբերման հետ։ ...Հին ինկերի երկրում, այժմյան Պերուի ջունգլիներով ծածկված շրջաններից մեկում, մի ցեղ էր ապրում, որը հայտնի էր բույսերի միջոցով ամենատարբեր հիվանդություններ բուժելու հմտությամբ։

Մի օր ցեղի անդամների մեջ մի անծանոթ ու սարսափելի հիվանդություն տարածվեց, որն ամեն օր տասնյակ մարդկային կյանք էր խլում։ Ցեղին հայտնի բուժիչ բույսերը, ավանդական ծիսակատարությունները արդյունք չեն տալիս։ Հիվանդությունը սկսվում էր ուժեղ գլխացավով, հաջորդ օրը սկսվում էր տենդը, իսկ երրորդ օրը հիվանդը մահանում էր։ Ցեղապետը ահ ու սարսափով էր դիտում իր մարդկանց կորուստը։ Ցեղին բնաջնջում էր սպառնում։

Հիվանդացավ նաև ցեղապետի միակ ու շատ սիրելի դուստրը, որը հազիվ 14 տարեկան էր։ Վշտից խելակորույս հայրը հրամայեց

շքախմբով իր աղջկան ջունգլիներ տանել և այնտեղ թողնելով՝ գաղտագողի ետ վերադառնալ: Չէր ցանկանում, որ երեխան իր աչքի առաջ մահանա: Ծառաները այդպես էլ վարվեցին. երեխային անտառ տարան, և, երբ բավականին խորացել էին անմարդաբնակ ջունգլիներում, աղջիկը ցանկացավ հանգստանալ: Նոր էր նա սկսել ննջել, երբ ծառաները աննկատ փախուստի դիմեցին: Ցեղապետը աղջկան մեռած համարելով, հաջորդ օրը հրամայեց ավանդական ծեսեր կատարել և աստվածներին զոհեր մատուցել աղջկա հոգու համար:

Անցավ երկու շաբաթ: Եվ հանկարծ՝ ուրախ լուր. ցեղապետի աղջիկը ողջ ու առողջ վերադառնում է ջունգլիներից: Հայրը ընդառաջ է վազում աղջկան և ուրախությունից արտասվելով, հարցնում է, թե ինչպե՞ս է ողջ մնացել: Աղջկա հագուստը ծվեն-ծվեն էր եղել, և մարմինը ծածկված էր բազմաթիվ վերքերով: Կուշտ ուտելուց հետո նա պատմեց իր ողիսականը:

... Արթնանալով քնից և տեսնելով, որ ծառաները անհետացել են, նա սկսել է թափառել անտառում, տան ճանապարհը որոնելով: Գլխացավը և ուժեղ տենդը տանջում էին նրան: Վերջապես, նա ուժասպառ նստել է մի բույսի սաղարթի տակ, որի հոտը նրան շատ է դուր եկել: Գլխացավն ու տենդը աստիճանաբար մեղմացել են, և նա այդտեղ խոր քուն է մտել: Արթնանալով՝ անհագ ցանկություն է ունեցել սնվելու այդ բույսի տերևներով: Դրանք սոսկալի դառն էին, սակայն որքան ծամում էր այդ տերևները, այնքան իրեն լավ էր զգում: Ծամում էր տերևները, բայց կուլ չէր տալիս: Միանգամայն առողջ զգալով իրեն, աղջիկը թափառում է ջունգլիներում, սնվում հատապտուղներով, մրգերով, զանազան արմատներով, մինչև որ գտնում է վերադարձի ճանապարհը:

Մարդիկ նետվում են անտառ՝ նկարագրված բույսը որոնելու: Շուտով նրանք վերադառնում են, իրենց հետ բերելով փրկարար բույսի տերևները: Դա ծխախոտն էր (կամ՝ նիկոտինա տաբակումը, ինչպես այն անվանվում է լատիներեն): Զարմանալի հիվանդությունը տեղի տվեց:

Այդ հանելուկային հիվանդության մասին ներկայումս ոչինչ հայտնի չէ, սակայն դրա շնորհիվ հայտնաբերվեց ծխախոտը, որը հնդկացիների մոտ սկզբում օգտագործվում էր ծամելու, իսկ հետագայում՝ ծխելու միջոցով: Այդ զարմանալի բույսը եվրոպացիներին հայտնի դարձավ Ամերիկան հայտնագործելուց հետո, 16-րդ դարի սկզբում:

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Երկու անկուշտ բաժակ

**Երեկոյան**
**Ժամը վեցին**
**Երկու բաժակ**
**Հանդիպեցին:**
**«Բարև»,— ասին**
**Ու խմեցին,**
**«Ո՞նց ես»,— ասին**
**Ու խմեցին,**
**«Լավ եմ»,— ասին**
**Ու խմեցին՝**
**Գինետանը**
**Ժամը վեցին...**

**Հետո պրծավ**
**Թե բառ, թե խոսք,**
**Մնաց միայն**
**Զնգոց, չխկոց:**
**Ու զնգացին**
**Երկու բաժակ.**
**Չրխկչրխկացին**
**Երկար-բարակ:**
**Գիտե՞ք, թե ինչ**
**Եղավ հետո,**
**Ինքս տեսա**
**Իմ աչքերով.**

**Մի դույլ ու մի**
**Ավել մաշված**
**Եկան դժգոհ**
**Ու զայրացած՝**
**Առավոտյան**
**Ժամը վեցին**
**Փշրանքները**
**Հավաքեցին:**





ԳԱԳԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ (ծնվ. 1947 թ.) «Նկարչի այցը գյուղ» (1983 թ.)

Հանձնված է տպագրության 12.07. 1985 թ.։ Ստորագրված է տպագրության 13.09. 1985 թ.։ ՎՖ 07592։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68032։ Պատ. 1780։ Գինը՝ 15 կ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 12.07.85 г. Подписано к печати 13.09.85 г. Формат 70×100 1/16. ВФ 07592. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2.92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68032. Заказ 1780. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**



ԳԱԳԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ (ծնվ. 1947 թ.) «Նկարչի այցը գյուղ» (1983 թ.)

Հանձնված է տպագրության 12.07. 1985 թ.։ Ստորագրված է տպագրության 13.09. 1985 թ.։ ՎՖ 07592։ Թուղթ օֆսեթ, $70 \times 100^{1}/_{16}$։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68032։ Պատ. 1780։ Գինը՝ 15 կ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 12.07.85 г. Подписано к печати 13.09.85 г. Формат $70 \times 100^{1}/_{16}$. ВФ 07592. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2.92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68032. Заказ 1780. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**



Լուսանկարը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ

Շապիկը՝ ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐԻ

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ, Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.:

**ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.** **ԻՆԴԵՔՍ՝ 77806**